

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**1**

ՀՈՒՆՎԱՐ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

С О Д Е Р Ж А Н И Е

**НАВСТРЕЧУ XXVII ПАРТСЪЕЗДУ**



**К 40-ЛЕТИЮ ВЕЛИКОЙ ПОБЕДЫ**



**ЛЮДИ НАШИХ ДНЕЙ**



**НОВЫЕ КНИГИ**









# ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

## ՍՄԿԿ ՏԵՍՈՒԹՅԱՆ, ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ԵՎ ՏԱԿՏԻԿԱՅԻ ՄԻ ՔԱՆԻ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ


**Կ. ՉԵՌՆԵՆԿՈ**
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար,
ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
նախագահ


*Մեր ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ավանդույթներից է յուրաքանչյուր խոշոր, բեկումնային պատմական սահմանագծում տալ համառոտ, բայց տարողունակ տեսական ֆորմուլա, որն արտահայտեր սկսվող փուլի էությունը, նոր խնդիրների յուրահատկությունը և առաջ քաշեր այնպիսի քաղաքական լոզունգներ, որոնք հնարավորություն տային հեղափոխական տեսության նորագույն եզրահանգումները զուգակցել մասսաների պրակտիկ գործունեության հետ, կուսակցության գաղափարներն ու կամքը՝ միլիոնավոր մարդկանց խոհերի ու կամքի հետ։*

*Այսօր մեր երկիրը գտնվում է զարգացած սոցիալիզմի փուլի սկզբին։ Այդ փուլի մեջ մտնելը կուսակցության և ժողովրդի ստեղծարար լարված գործունեության օրինաչափ արդյունքն է, տասնամյակների այն աշխատանքի հանրագումարը, որով մենք հիրավի պարծենում ենք։ Դրա հետ մեկտեղ դա նաև մեզ մոտ կառուցված սոցիալիզմի կատարելագործման խնդիրների լուծման մեծ ու բարդ շրջադարձի սկիզբն է։*

*Այդ խորին ֆորմուլայով արտահայտված քաղաքական, գաղափարատեսական և մեթոդաբանական մոտեցումը սոցիալիզմի հետագա զարգացման և դեպի կոմունիզմ առաջընթացի սկզբունքային հարցերի նկատմամբ դրված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության վրա կատարվող աշխատանքի հիմքում, որը պետք է քննարկվի և ընդունվի հերթական, XXVII կուսհամագումարում։ Ծրագրի հիմնադրույթների հետ պետք է համապատասխանեցվեն նաև երկրի տնտեսական, սոցիալական զարգացման պլանները՝ տասներկուերորդ հնգամյակում և առավել երկարատև հեռանկարում։*

*Պատրաստվելով համագումարին՝ կուսակցությունը անհրաժեշտ է համարում բազմակողմանիորեն իմաստավորել անցած ուղին, տալ գործերի ներկա վիճակի ճշգրիտ գիտական գնահատականը, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական քաղաքացու գիտակցությանը հասցնել այստեղից բխող խնդիրների նորույթը և բազմաբարդությունը, նրանց մեջ առաջացնել այդ խնդիրները ստեղծագործաբար լուծելու պահանջմունք։*

**1**

*ՍՄԿԿ ստրատեգիայի և տակտիկայի հիմքը արդի պայմաններում կազմում է մարքսիստական-լենինյան կոնցեպցիան զարգացած սոցիալիզմի մասին,*

թյունը, շինարարությունը, տրանսպորտը, սպասարկման ոլորտը, ամբողջովին բարձրացնել ժողովրդական տնտեսության արդյունավետությունը, նրա բոլոր ճյուղերի ինտենսիվացման ասպարեզում հասնել վճռական բեկման։ Հենց այդպիսի խնդիր է դրել կուսակցությունը XXVI համագումարում, Կենտկոմի հետագա պլենումներում։

Սոցիալիստական հասունության մակարդակում, սոցիալիզմի բարձր նորմերի իրականացման աստիճանում, նրա վիթխարի պոտենցիալի օգտագործման մեջ որոշ տարբերություններ գոյություն ունեն նաև մեր կյանքի մի քանի այլ ճյուղերում։ Չէ որ գաղտնիք չէ, որ աշխատանքի, սոցիալիստական սեփականության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի նմուշները մեզանում դեռևս հարևանություն են անում թափթփվածության, անտնտեսվարության, ուրիշների հաշվին, հասարակության հաշվին իրենց բարեկեցությունը կարգավորելու որոշ այն մարդկանց ձգտման հետ, որոնք իրենց շահերի համար են օգտագործում առանձին սպառման ապրանքների պակասը, աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ վերահսկողության սիստեմի թերությունները։ Այդ ամենը պահանջում է տնտեսական մեխանիզմի լուրջ բարելավում, բաշխման հարաբերությունների կատարելագործում, կարգի և կարգապահության հետագա ամրապնդում, գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության ուժեղացում։

Ոչ հասարակ պրոբլեմներ կան նաև սոցիալական ոլորտում, որոնք առաջանում են բնակչության տարբեր դասակարգերի և խմբերի առանձնահատուկ շահերի տարբերության և դրանց լավագույն համապատասխանեցման անհրաժեշտության հետևանքով։ Դրանք կան նաև քաղաքական ոլորտում, որտեղ, ինչպես նշվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումում, մեզ անհրաժեշտ է հաղթահարել մեր դեմոկրատիայի, առաջին հերթին, սովետների հարուստագույն հնարավորությունների և գործնականում դրանց ռեալ օգտագործման հայտնի տարբերությունը։ Դրանք կան նաև ազգային հարաբերությունների ոլորտում, քանի որ ազգային հարցի լուծումը այն տեսքով, ինչպես հասել է մեզ կապիտալիզմից, չի նշանակում ո՛չ այն, թե այդ հարցը առհասարակ օրակարգից հանված է, և ոչ էլ այն, թե մեզ արդեն հաջողվել է վերջ տալ մարդկանց հոգեբանության մեջ անցյալի մնացուկներին, տեղայնության կամ ազգային սահմանափակության դրսևորումներին։

Իրենց ծագումով ու բնույթով կոմունիզմի առաջին փուլի այս կամ այն աստիճանին վերաբերող մեծ և բարդ պրոբլեմների ամբողջ կոմպլեքսի լուծումն էլ հենց կազմում է այն բազմապլան աշխատանքի բովանդակությունը, որը կուսակցությունը սահմանում է որպես մեզանում կառուցված սոցիալիզմի կատարելագործում։ Ինչ որ բան հարկ կլինի, հավանաբար, ոչ միայն հասցնել ավարտին, այլև վերակառուցել։ Լենինը նման հնարավորությունը չէր բացառում, նշելով, որ «դեռ մեզ շատ անգամ հարկ կլինի ավարտելու, վերակերտելու, սկզբից սկսելու» (ԵԼԺ, հ. 44, էջ 269)։

Այսօր ի մի բերելով անցած ուղին, առաջ քաշելով իրենց էությամբ նորարարական գաղափարներ, մենք նորից ու նորից դիմում ենք լենինյան անըսպառ ժառանգությանը, այնտեղ գտնելով այնպիսի մտքերի շերտեր, որոնք ստեղծագործական ազդակ են ավելի խոր հասկանալու և՛ անցյալը, և՛ ներկան, և՛ ապագան։

Խորհելով մեր հեղափոխության առանձնահատկությունների մասին, Լենինը իր վերջին աշխատություններից մեկում հանգեց այն եզրակացության, որ «ամբողջ համաշխարհային պատմության զարգացման ընդհանուր օրինաչափությամբ բոլորովին չեն բացառվում, այլ, ընդհակառակն, ենթադրվում են զարգացման առանձին ժամանակաշրջաններ, որոնք ներկայացնում են, այդ զարգացման կա՛մ ձևի, կա՛մ կարգի յուրահատկությունը», «սովորական պատմական կարգի ձևափոխումները...» (ԵԼԺ, հ. 45, էջ 449 և 451)։ «Սովորական կարգ» ասելով նա նկատի ուներ արտադրողական ուժերի և կուլտուրայի զարգացման այնպիսի աստիճանի նվաճում, որ պահանջվում է սոցիալիզմի կառուցման համար։ Այդպիսի մակարդակ, ինչպես նշում էր Լենինը, լիակատար իմաստով հին Ռուսաստանում չկար։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը մեր երկիրը մեկեն դարձրեց ամենաառաջավոր երկիրը՝ քաղաքական իմաստով։ Պատմական կարգի փոփոխությունները, ըստ Լենինի, կայանում էին նրանում, որ բանվորները և գյուղացիները սկզբից նվաճեցին իշխանությունը, որպեսզի հետո դրա հիման վրա հաղթահարեն նյութատեխնիկական հետամնացությունը, երկրի արտադրողական ուժերը հասցնեն համաշխարհային բարձր մակարդակի։ Մեր ներկայիս մի քանի պրոբլեմներ և դժվարություններ պատմականորեն կապված են հենց այն բանի հետ, որ տակավին «սովորական կարգի» ձևափոխումների առաջացրած ոչ բոլոր խնդիրներն են մինչև վերջ լուծված։ Դրանց լիակատար լուծումը լայն ասպարեզ կբացի հասարակական կյանքի բոլոր բնագավառներում սոցիալիզմի առավելությունների բացահայտման համար, աստիճանաբար կոմունիզմի անցնելու համար։

Մեր հասարակության կատարելագործումը, իհարկե, ենթադրում է, որ այսօր մենք պետք է աշխատենք ավելի լավ, քան երեկ, իսկ վաղն ավելի լավ, քան այսօր։ Բայց միայն դա արդեն բավարար չէ։ Բանը միայն այն չէ, որ, այսպես ասած, «նշենք», թե մենք մտել ենք զարգացած սոցիալիզմի փուլը։ Ավելի կարևոր է որոշել այն պահանջների բուն բնույթը, որ ներկայացնում են նոր պայմանները, կոնկրետ կողմնորոշիչներն ու նպատակները, որոնք ճշգրիտ համաձայնեցվում են ձեռք բերված աստիճանի իրողությունների հետ և նախատեսված են նախ և առաջ տեսանելի հեռանկարի առումով։

Մեր նախորդ զարգացման արդյունքով, ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի հետագա պլենումների որոշումների իրականացման ասպարեզում կուսակցության և ժողովրդի ստեղծարար հսկայական աշխատանքի ընթացքում մենք դուրս ենք եկել այնպիսի բնագծեր, երբ կարող ենք և պետք է առաջ ընթանանք, կողմնորոշվելով դեպի սոցիալիզմի վերաբերյալ գիտական տեսության մշակած առավել բարձր, ամենախստապահանջ պատկերացումները։ Սա է մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտներում հասունացած որակական խոր վերափոխումների էությունը։

Իսկ որո՞նք են այն գլխավոր կողմնորոշիչները, որոնցով մենք պետք է գցենք սոցիալիստական հասարակության կատարելագործման մեր գլխավոր կուրսը։ Այսպես դնելով հարցը, մենք պարզորոշ գիտակցում ենք, որ խոսքը կարող է վերաբերել միայն հաստատապես ընդունված փաստերի և միանգամայն որոշակի միտումների սահմաններում մեր պատկերացումների խորացմանն ու կոնկրետացմանը։ Գործելով մարքսիստական-լենինյան պատգամների ոգով, առանց մանրամասն կանխագուշակումների մտահայեցողական նախագծման փորձերի, կուսակցությունը վերջին տարիներին իր տեսական և քաղաքական զինանոցը հարստացրել է այնպիսի դրույթներով, որոնք հնարավորություն են ընձեռում ավելի պարզորոշ տեսնելու զարգացման ընդհանուր գիծը, առավել հավաստի գցել ապագայի ուղին։

Կուսակցության ջանքերն ուղղված են նախ և առաջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, սոցիալիստական տնտեսավարման ձևերի և մեթոդների ըստ ամենայնի կատարելագործման և բարելավման հիման վրա երկրի էկոնոմիկայի ինտենսիվացման ավարտին։ Միայն այսպես կարող է ստեղծվել ամենաառաջավոր, զարգացած սոցիալիզմի խստակարգ չափանիշներին համապատասխանող նյութատեխնիկական բազա, ուրեմն և ապահովել սովետական ժողովրդի բարեկեցության որակապես նոր մակարդակ։

Մենք ըստ ամենայնի կնպաստենք այն պրոցեսների խորացմանը, որոնք կբերեն անդասակարգ սոցիալիստական հասարակության հաստատում, ազգերի հետագա ծաղկում և մերձեցում, կհասնենք այն բանին, որպեսզի ամենուրեք և ամեն տեղ հասարակական հարաբերությունները խարսխվեն սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքներին խիստ համապատասխան։

Քաղաքական սիստեմի զարգացման մեջ մեր գլխավոր կողմնորոշիչը կարող է լինել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման լիաչափ իրականացումը։ Մենք ինքնակառավարումը հասկանում ենք որպես հասարակության

և պետության գործերի կառավարման այնպիսի դեմոկրատական սիստեմ, որը, Լենինի բառերով ասած, գործում է ոչ միայն աշխատավորների համար, այլև իրենց՝ աշխատավորների միջոցով։ Դա, հասկանալի է, կպահանջի կուսակցության դերի հետագա աճ, հասարակության ղեկավարման կուսակցական-քաղաքական մակարդակի որակական բարձրացում։

Տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման ասպարեզում բարձր բնագծերի հասնելն անհնար է առանց աշխատավորների խոր գիտելիքների, նրանց բարձր գիտակցականության և կուլտուրայի վրա հենվելու։ Դրա հետ մեկտեղ, արտադրատնտեսական, սոցիալական և քաղաքական նոր պայմանների ստեղծումը վերջին հաշվով պետք է նպատակամղված լինի մարդու ներդաշնակ զարգացման ապահովմանը։ Անհատի բազմակողմանի զարգացումը եղել և մնում է մեր գերագույն նպատակը։ Ընդսմին պետք է միայն հիշել, որ յուրաքանչյուրի զարգացման բազմակողմանիության սահմանը որոշվում է բոլորի բազմակողմանի զարգացման աստիճանով, իսկ դա պայմանավորված է հասարակության սոցիալ-տնտեսական հասունության, նրա նյութական և կուլտուրական հնարավորությունների ձեռք բերված մակարդակով։

Բոլոր աշխատավորների կողմից կուսակցության հիրավի նորարարական, խորապես ստեղծագործական եզրահանգումների և հիմնադրույթների յուրացումը ըստ էության նշանակում է հասարակական գիտակցության վերակողմնորոշում։ Դրան ուղղված գաղափարատեսական, պրոպագանդիստական աշխատանքի նշանակությունը բացառիկ մեծ է։ Մարդկանց գիտակցության զարգացման մեջ, ժողովրդի սոցիալական ստեղծագործության հետ սոցիալիզմի գիտական տեսության գաղափարների միացության մեջ մենք ամենայն իրավունքով տեսնում ենք, ինչպես որ տեսել ենք միշտ, մեր հասարակարգի հսկայական առավելությունը, մասսաների աշխատանքային և հասարակական ակտիվության հզոր աղբյուրը։ Բացարձակապես անհրաժեշտ է այդ պատճառով սովետական յուրաքանչյուր քաղաքացու տոգորել առաջացած խնդիրների մասշտաբայնության և բարդության, դրանց իրականացման պատրաստակամության և կարողության պարզորոշ գիտակցումով, գործելով եռանդուն կերպով, նախաձեռնողաբար, առավելագույն արդյունքով։

Դրա հետ մեկտեղ, հարկավոր է մշտապես հիշել, որ խոսքը ոչ միայն այն մասին է, որպեսզի, այսպես ասած, տեսականորեն յուրացվեն նոր գաղափարները։ Կենսականորեն կարևոր է գործը կազմակերպել այնպես, որպեսզի այդ գաղափարների հաշվառմամբ տարվի կուսակցության, սովետական և տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների ամբողջ աշխատանքը, ընդսմին բոլոր մակարդակներում և ամենուրեք։ Դա է տնտեսական զարգացման սկզբունքային հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և կառավարության վերջին տարիներին ընդունած որոշումների քաղաքական իմաստը։ Հենց այդ տեսանկյունից են մոտեցել կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության, ստեղծագործական միությունների գործունեության հրատապ պրոբլեմներին։

Ասվածից պարզ է, որ զարգացած սոցիալիզմի կատարելագործումը կկազմի պատմական մի ամբողջ ժամանակաշրջան։ Այդ ժամանակաշրջանը կունենա իր կոնկրետ աստիճանները, իր խնդիրների հաջորդականությունը, իր ժամկետները։ Բայց առաջնահերթ հասունացած պրոբլեմները անհրաժեշտ է լուծել արդեն այսօր, անհապաղ, հաջորդ հնգամյակի պլաններում դնելով ընդհանուր որակական կողմնորոշիչները։

Այդ ամենն իր արտացոլումը կգտնի ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում։ Ծրագրում մտցնելով նոր ճշտումներ, որոնք թելադրված են կուսակցության մեջ հաստատված քաղաքական և գիտական ռեալիզմի ոգով, մենք դրանով իսկ առավել հստակորեն ենք սահմանում անմիջականորեն կոմունիստական շինարարության բնագծեր դուրս գալու հեռանկարը։ «Խստորեն զանազանել իրենց բնությամբ տարբեր փուլերը, զգաստ կերպով հետազոտել նրանց անցկացման պայմանները,— գրել է Լենինը,— ամենևին չի նշանակում երկար



ժամանակով հետաձգել վերջնական նպատակը, ամենևին չի նշանակում վաղօրոք դանդաղեցնել իր ընթացքը» (ԵԼԺ, հ. 9, էջ 157)։ Լենինյան այս մեթոդաբանական սկզբունքը մենք հաշվի ենք առնում լիակատար չափով։

Մեր ուսմունքի հիմնադիրները կոմունիզմը դիտում էին ոչ միայն որպես իդեալ և ինչ որ վերջնական վիճակ, այլ նախ և առաջ որպես «իրական շարժում» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 34)։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործումն էլ հենց իրական շարժում է դեպի կոմունիզմ։ Այլ ուղի չկա։

Ամեն մի շտապողականություն, ժամանակից առաջ անցնել, որոնք այդ ուղու վերաբերյալ դյուրացված պատկերացումների ծնունդ են, նշանակում են, եթե խորամուխ լինենք, ոչ այլ ինչ, եթե ոչ փորձել վաղվան թողնել այն, ինչը կարելի է և պետք է անել այսօր։ Դա լենինյան, բոլշևիկյան մոտեցում չէ։ Չէ որ քաղաքական ճարճատյունի ետևում, որ դատապարտում էր Լենինը, ավելի հաճախ թաքնվում է, թող որ դա թելադրված լինի լավագույն դրդապատճառներով, մտադրությունը մեր այսօրվա թերությունները և բացթողումները վերագրելու սոցիալիզմի բնականոն ուղեկիցների թվին, որոնցից կարելի է ազատվել միայն լիակատար կոմունիզմի օրոք։ Նման մոտեցումը նվազեցնում է թե՛ սոցիալիզմի և թե կոմունիզմի հանդեպ պահանջների մակարդակը, սքողում է, Լենինի բառերով ասած, նրանց միջև եղած վիթխարի տարբերությունները։

Այնպես որ, խոսքը ոչ թե դեպի կոմունիզմ մեր առաջընթացի դանդաղեցման մասին է, այլ արագացման, իրական, փաստական արագացման մասին, երբ դրվում են ռեալ նպատակներ և կիրառվում են դրանց հասնելու իրական միջոցներ։

Մեզանում կա ամեն անհրաժեշտ բան նոր խնդիրների արդյունավետ լուծման համար։ Եվ գլխավորը՝ մեր կողմն է «իր ուղին հաստատապես գիտեցող կուսակցության դրության առավելությունը...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 34, էջ 310)։

## 2.

Մատնանշելով զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսի բազմապլանայնությունը, մենք դրանով ուշադրություն ենք դարձնում առաջիկա մեր աշխատանքի վիթխարի ծավալի վրա։ Հասկանալի է, թե որքան անհեթեթ կլիներ նշել այդ աշխատանքի ավարտման ճշգրիտ տարեթիվը։ Այստեղ ժամկետները կսահմանվեն սովետական ժողովրդի աշխատանքային գործունեության արդյունքներով։ Դրանք վճռական չափով կորոշվեն այն բանով, թե ինչ բնագծեր են ձեռք բերվել, ինչ բարձունքներ են նվաճվել ժողովրդական տնտեսության մեջ։

Հարկ չի լինի մոռանալ նաև, որ մենք ապրելու և աշխատելու ենք բարդություններով ու հակասություններով լի աշխարհում։ Էկոնոմիկան առաջնահերթ ուշադրություն է պահանջում նաև այդ կապակցությամբ։ Դրա մեջ է մեր պաշտպանական հզորության, անվտանգության, սովետական ժողովրդի աշխատանքի խաղաղ պայմանների ապահովմանն ուղղված մեր բոլոր ջանքերի նյութական հիմքը։ Որքան լավ լինեն մեր տնտեսական գործունեության արդյունքները մեր տանը, այնքան ծանրակշիռ ավանդ մենք կկարողանանք ներդնել եղբայրական սոցիալիստական երկրների հետ մեր տնտեսական համագործակցության մեջ, այնքան արդյունավետ կլինի այդ համագործակցությունը հենց մեզ համար, մեր դաշնակիցների, ամբողջ համաշխարհային սոցիալիզմի համար։

Ընդհանրապես, մշակելով մեր, այսպես ասած, գլոբալ արտաքին քաղաքական ստրատեգիան, մենք ղեկավարվում ենք, միշտ պետք է ղեկավարվենք այն մտքով, որ միջազգային զարգացման վրա, համաշխարհային պատմության ընթացքի վրա մեր գլխավոր ներգործությունը մենք ունենալու ենք մեր տնտեսական հաջողություններով։ Մի խոսքով, տնտեսական շինարարությունը մեզ համար «գլխավոր քաղաքականությունն է» (Լենին)։

Գործերի վիճակը մեր էկոնոմիկայում, նրա նվաճումները, պրոբլեմներն

ու դժվարությունները՝ այդ ամենը, իհարկե, հանգամանալից խոսակցության առարկա է լինելու կուսակցության XXVII համագումարում: Համագումարը կընդհանրացնի հաշվետու ժամանակաշրջանում երկրի տնտեսական առաջընթացի արդյունքները, կտա կատարվածի ու անավարտ թողնվածի հաշվեկշիռը, կառաջադրի ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրները հետագա հնգամյա ժամանակաշրջանի և մինչև դարեվերջն ընկած շրջանի համար: Ընդ որում տնտեսական շատ հարցեր, այդ թվում սկզբունքային նշանակություն ունեցող խոշոր հարցերը, այս անգամ համագումարի օրակարգում են դրվելու ոչ միայն այն պատճառով, որ ժամանակը մեզ հասցրել է մեկ հնգամյակը մյուսից բաժանող օրացուցային ուղենիշին:

Մեր էկոնոմիկան ինքը ընդհուպ մոտեցել է մի բնագծի, որտեղ որակական տեղաշարժերն ու կատարված փոփոխությունները դարձել են, այսպես ասած, հրամայական անհրաժեշտություն: Համապատասխանաբար, կուսակցության համար համագումարի նախապատրաստությունն իր մեջ ընդգրկում է այն բանի նախապատրաստությունը, որ տանք ինչպես ժողովրդական տնտեսության մեջ հասունացած տեղաշարժերի, այնպես էլ առաջիկայում դրանց բացելիք մերձավորագույն ու երկարաժամկետ հեռանկարների էության խոր գնահատականը:

Այսօր էկոնոմիկայի հետ կապված մեր ողջ մտածելակերպն ու գործելակերպը պետք է որոշվեն զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայով, համապատասխանեն դրա պարունակած ռեալիստական պահանջին: Ի՞նչ է նշանակում դա:

Չափազանց կարևոր է ռեալիստորեն մոտենալ այն հարցին, թե էկոնոմիկան ինչ կարող է տալ և ինչ չի կարող տալ կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի շրջանակներում: Անթույլատրելի է էկոնոմիկան կողմնորոշել դեպի անհասանելի, թող լինի թեկուզ հրապուրիչ, նպատակները: Եվ մարքս-լենինյան գիտությունից, և՛ կյանքից նման խզման համար, իսկ այլ կերպ ասած, վոլյունտարիզմի համար հատուցումը լինում է անխուսափելի: Բայց անթույլատրելի է ընկնել նաև մյուս ծայրահեղության մեջ, այսինքն որևէ կերպ թերագնահատել սոցիալիստական էկոնոմիկայի հնարավորությունները, նրա առջև դնել խնդիրներ՝ ելնելով նրա ստեղծարար ուժի մասին թույլ պատկերացումներից: Սա նույնպես պիտանի դիրքորոշում չէ, վայել չէ մարքսիստ-լենինյաններին, խորթ է սոցիալիստական հասարակության բուն հեղափոխական ոգուն:

Մեր տնտեսական գործերում չպետք է տեղ գտնի նեղ պրակտիցիզմը, որը ներփակվում է ընթացիկ առօրյա գործերի մեջ, երկյուղում է մեծ գաղափարներից ու նպատակներից: Իսկ մինչդեռ գաղտնիք չէ, որ ժողովրդական տնտեսության մեջ աշխատող որոշ ընկերներ երբեմն լրիվ կլանվում են մասնավոր, օրախնդիր պրոբլեմներով: Կրկնակի վատ է, երբ էկոնոմիկայի նկատմամբ ընդգրկուն ու համարձակ հայացքների պակասով տառապող մոտեցումը արդարացնում են՝ վկայակոչելով ռեալիզմի թյուր ըմբռնված պահանջը: Իբր, չի կարելի աչք փակել դժվարությունների ու բարդությունների հանդեպ, իսկ դրանք մեզ մոտ, իբր, այսօր այնքան են, որ ավելի լավ է այլևս վաղվա համար մեծ պլաններ չկազմել: Ավելորդ չէ հիշեցնել, թե նման, թող թույլ տրվի ասել, «ռեալիզմին» ինչպես էր վերաբերվում Լենինը. «...Երբ հանդես են գալիս շատ տարիների համար կազմված մեծ պլաններ, հաճախ գտնվում են սկեպտիկներ, որոնք ասում են՝ մեր ինչ բանն է շատ տարիների համար ծրագիր կազմել. աստված տա, որ կարողանանք անել գեթ այն, ինչ որ անհրաժեշտ է այժմ: ...Հարկավոր է կարողանալ միացնել թե այս, թե այն. չի կարելի աշխատել առանց երկարատև ժամանակաշրջանի համար նախանշված և լուրջ հաջողություն խոստացող պլանի» (ԵԼԺ, հ. 42, էջ 190):

Գործի նկատմամբ հենց այդպիսի, լենինյան մոտեցումը պետք է իսկական ռեալիզմի օրինակ ծառայի տնտեսական աշխատանքում: Խիստ տնտեսական հաշվարկների զգաստությունը նրա մեջ օրգանապես զուգորդվում է քաղաքական լայն տեսադաշտի հետ, այն գլխավորը ընդհանրացնելու և ար-



տահայտելու կարողության հետ, որը ձևավորում է և՛ ներկայիս իրականությունը, և՛ սովետական էկոնոմիկայի ապագան:

Այստեղից հետևում է նաև այն, որ մեր պլանները, տնտեսական պրակտիկան պետք է հիմնավորված լինեն ոչ թե պարզապես տնտեսագիտորեն, այլ ամենից առաջ՝ քաղաքատնտեսագիտորեն: Ուրիշ խոսքով, նրանք պետք է հենվեն սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օբյեկտիվ օրենքների իմացության և ըստ ամենայնի օգտագործման վրա: Չէ որ, եթե դրանք հաշվի չառնենք, հարկ էլ չկա խոսելու ռեալիզմի մասին:

Կուսհամագումարների, Կենտկոմի պլենումների փաստաթղթերը պարունակում են այն հետևությունը, որ զարգացած սոցիալիզմի փուլում հասարակական օբյեկտիվ պահանջմունք են դառնում անցումը տնտեսավարության ինտենսիվ մեթոդների, արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացումը: Կարևոր է այդ հետևության հենց քաղաքատնտեսական էությունը: Եթե այն մնա չըմբռնված, ապա, ինչպես ցույց է տալիս փորձը, տեսականորեն խոր և ճիշտ գաղափարը մեծապես կորցնում է մոբիլիզացնող, ուղղություն տվող նշանակությունը պրակտիկայի համար:

Իրոք, ի՞նչն է մեզ մղում ինտենսիվացնելու արտադրությունը կամ, ուրիշ խոսքով, այն բանին, որ արտադրանքի ավելի շատ արտադրության հասնենք նյութական միջոցների ավելի նվազ ծախսումներով, ավելի քիչ աշխատողներով: Ցուրովի ճիշտ, բայց այնուհանդերձ անբավարար, քաղաքատնտեսական խորությունից զուրկ պատասխանն այն է, որ վերջին ժամանակներս իրեն ավելի շատ է զգացնել տալիս արտադրության մեջ ներգրավվող նյութական և մարդկային ռեսուրսների սահմանափակությունը:

Այո՛, ռեսուրսների որոշակի պակաս կա: Բայց հարցնենք մեզ. իսկ մի՞թե հակառակ դեպքում, այսինքն՝ պահանջվող քանակություններով հումքի, վառելիքի, նյութերի, բանվորական ուժի առկայության դեպքում թույլատրելի կլիներ այսօր տնտեսությունը վարել ժամանակակից հասկացողություններով այնպիսի շռայլ մեթոդներով, որոնք բնորոշ են էքստենսիվ էկոնոմիկայի համար: Ի դեպ, սա ամենևին էլ վերացական հարցադրում չէ: Չէ որ ռեսուրսների շատ տեսակների պակաս մենք չենք ունեցել և չունենք էլ: Եվ, այնուամենայնիվ, այսօր անթույլատրելի է դրանք օգտագործել առանց խստագույն հաշվառման, առանց դրանց խնայողության մասին յուրաքանչյուր քայլափոխի ակտիվորեն ցուցաբերվող հոգածության:

Անթույլատրելի է այն պատճառով, որ սովետական էկոնոմիկայի սեփական հաջողությունները դրել են իր էքստենսիվ զարգացման սահմանը: Ինտենսիվացման անհրաժեշտությունը թելադրված է ոչ միայն և նույնիսկ ոչ այնքան ռեսուրսների պակասով, այլ նախ և առաջ նրանով, որ մեր ժողովրդական տնտեսությունն արդեն ապահովել է արտադրության այնպիսի ծավալ, որի ժամանակ առաջ գնալու համար հարկավոր է ոչ այնքան ընդլայնել, որքան նորացնել այն: Կազմակերպելով և ուղղություն տալով ժողովրդատնտեսական պրոցեսին, ոչ մի դեպքում չի կարելի ղեկավարվել «Նույն բանը, միայն թե ավելի շատ արտադրելու» դրույթով:

Իհարկե, արտադրանքի որոշ տեսակներ մեզ դեռևս պակասում են: Ինչ-որ մի որոշ ժամանակամիջոցում մենք դեռ մեր շատ ուժերն ու միջոցներն ուղղելու ենք՝ վերացնելու համար ամեն տեսակ դեֆիցիտներ, անհամամասնություններ, «լայնացնելու նեղ տեղերը»: Այստեղ ոչինչ չես կարող անել: Բայց կարևոր է հասկանալ, որ, միջոցներ ձեռնարկելով այդ պրոբլեմները ամենաարագ լուծելու համար, գլխավոր ուշադրությունը հարկավոր է փոխադրել այն բանի վրա, որ որակական տեղաշարժն ապահովվի ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ: Պետք է պարզորոշ տեսնել, որ երկրի հետագա տնտեսական առաջընթացը վճռական չափով պայմանավորված է նրանով, թե ինչպես են օգտագործվում բոլոր եղած ռեսուրսները, զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի բուն էության մեջ եղած ստեղծարար վիթխարի ուժերը գործադրելու մեր ունակությամբ:

Իսկ այդ ուժերն այնպիսին են, որ այսօր մեզ թույլ են տալիս, իսկ ավելի

ճիշտ՝ նույնիսկ պարտավորեցնում են մեր առջև դնելու ծրագրային նշանակություն ունեցող մի մեծ խնդիր՝ ապահովել, որ երկիրը հասնի հանրային աշխատանքի արտադրողականության համաշխարհային բարձրագույն մակարդակի։ Այդպիսի խնդրի առաջադրումը հիմնավորված է և՛ քաղաքականապես, և՛ սոցիալապես, և՛ տնտեսապես։

Առաջին, քանի որ մենք ձգտում ենք սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերը համապատասխանեցնել սոցիալիզմի մասին ամենաբարձր, գիտական պատկերացումներին, աշխատանքի արտադրողականության հարցը հառնում է հենց այն սկզբունքային նշանակությամբ, որ նրան տալիս էր Լենինը։ Հենց աշխատանքի ամենաբարձր արտադրողականության հասնելն էլ, ինչպես հայտնի է, նա համարում էր «ամենակարևորը, ամենագլխավորը» հասարակական-տնտեսական նոր ֆորմացիայի վերջնական ու լիակատար հաղթանակի համար։ Եվ զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսը իր իմաստով, բովանդակությամբ ենթադրում է, որ Լենինի ձևակերպած այդ խնդիրը պետք է փոխադրվի իր գործնական լուծման բնագավառը։

Երկրորդ, եթե մեր հասարակության հետագա զարգացումը դիտվում է որպես շարժում դեպի սոցիալիստական իդեալի լրիվ իրականացում, ապա դրանով դրվում է նաև այդ զարգացման պարտադիր սոցիալական կողմնորոշիչը՝ ժողովրդի բարեկեցության ամենաբարձր վերելքը։ Դրան կարելի է հասնել միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։ Դրա բարձրագույն մակարդակը սոցիալիստական հասարակությունում և՛ անհրաժեշտ, և՛ բավարար պայման է, որ այդպիսին լինի նաև աշխատավորների կենսամակարդակը։

Երրորդ, աշխատանքի արտադրողականության բնագավառում համաշխարհային առաջնության հասնելու կուրսը համապատասխանում է մեր ներկայիս տնտեսական հնարավորություններին։ ՍՍՀՄ-ում ստեղծված միասնական բազմաճյուղ ժողովրդատնտեսական կոմպլեքսն ունի արտադրատեխնիկական հզոր պոտենցիալ։ Արտադրանքի շատ տեսակների թողարկմամբ մեր երկիրը վստահորեն ընթանում է առջևից, իր հավասարը չունի աշխարհում։ Իսկ ինչ վերաբերում է հանրային աշխատանքի անմիջական արտադրողականությանը, ապա դրա աճի տեմպերով Սովետական Միությունն առաջ է անցել կապիտալիստական առաջատար պետություններից։ Եվ թեպետ այդ հիմնական ցուցանիշով ոչ փոքր խզում դեռ կա սովետական էկոնոմիկայի և բարձր զարգացած կապիտալիզմի միջև, մենք ի վիճակի ենք հաղթահարելու այն և առաջ անցնելու։

Սխալ կլիներ հույս դնել, որ այդ նպատակից մեզ բաժանող տարածությունը կհաջողվի արագ անցնել։ Բայց որքան էլ մեծ, որքան էլ բարդ է խնդիրը, ոչ մի հիմք չկա դրա կատարումը հետաձգել տեսանելի ապագայի սահմաններից դուրս։ Ուստի այն պետք է առկա լինի գիտակցության մեջ, բառացիորեն ծառացած լինի մեր աչքերի առջև արդեն այսօր։ Դրա հետ պետք է համաձայնեցվեն մեր պլանները, կոնկրետ տնտեսական լուծումները։

Այդ տեսանկյունից էլ հարկավոր է դիտել նաև սովետական էկոնոմիկայի ամենամոտ խնդիրները։ Հարցն այժմ դրված է այնպես, որ մինչև 80-ական թվականների վերջը մենք պետք է արմատական բեկման հասնենք ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման, նրա բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում։ Այդպիսի բեկման համար օբյեկտիվ նախադրյալներ կան։ Խնդիրն այն է, որ մեր ամբողջ տնտեսական աշխատանքը վճռականորեն ուղղենք դրա իրականացմանը։

Առաջին ու անվիճելի բանը, որ պետք է անել, այն է, որ մոբիլիզացնենք կազմակերպական ջանքերն ու նյութական միջոցները, որոնք անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ամենաարագ տեխնիկական վերազինման, ամենաառաջադիմական տեխնոլոգիաների արտադրական արագ յուրացման համար։ Դա արմատական նշանակություն ունեցող խնդիր է։ Այն լուծել՝ նշանակում է լուծել նաև էկոնոմիկայի ինտենսիվացման, արդյունավետության բարձրացման պրոբլեմը։ Եվ բնական է, որ մեր երկրի գիտատեխնի-



կական վիթխարի պոտենցիալի տնտեսական, արտադրական օգտագործման հարցերը, նրա հետագա զարգացման և ուժեղացման հարցերն այժմ գտնվում են կուսակցության ուշադրության կենտրոնում։ Նախատեսվում է, որ դրանք հանգամանորեն ու համակողմանիորեն քննարկի ՍՄԿԿ Կենտկոմի առաջիկա պլենումը։

Այն արդյունքը, որ մենք ուզում ենք ստանալ նոր տեխնիկան և տեխնոլոգիան արտադրության մեջ արմատավորելու աշխատանքից, ճիշտ է բնորոշվում որպես արտադրողական ուժերի որակական վերափոխում։ Դրա հետ մեկտեղ կա յուրաքանչյուր մարքսիստի քաջ հայտնի այն ճշմարտությունը, որ արտադրողական ուժերի զարգացումը անպայման ունի հասարակական որոշակի ձև, որ կազմում են արտադրական հարաբերությունները։ Մենք այդ ճշմարտությունը երբեք չենք մոռանում, չպետք է մոռանանք։ Առավել ևս, որ կյանքը, մեր սեփական պրակտիկան մշտապես այդ են հիշեցնում։

Հիշեցնում են, այսպես ասած, դրականորեն, երբ տնտեսական նոր ձևերը, որոնք կիրառվում են տնտեսական փորձերի շրջանակներում, անմիջապես ու շոշափելիորեն նպաստում են արտադրական ապարատի նորացմանը, աշխատանքի արտադրողականության նշանակալի վերելքին։ Հիշեցնում են նաև բացասական առումով՝ այն դեպքերում, երբ տնտեսավարման ստեղծված և անցյալում իրենց արդարացրած ձևերն ու մեթոդները խոչընդոտ են դառնում նոր տեխնիկայի ճանապարհին, չեն թողնում, որ այն մտնի արտադրամաս։ Այստեղից կարող է լինել միայն մի հետևություն. արտադրողական ուժերի որակական վերափոխման մասին մեր բոլոր հոգսերի արդյունավետությունը ուղղակի պայմանավորված է այն բանով, թե մենք արդյոք կարողացել ենք համապատասխան փոփոխություններ մտցնել արտադրական հարաբերությունների մեջ։

Հայտնի են այն նախաձեռնությունները, որոնցով հանդես է եկել կուսակցությունը, այն միջոցները, որ նա ձեռնարկել է արտադրական հարաբերությունների կատարելագործման պրոցեսը ծավալելու նպատակով։ Դրանք են և՛ բրիգադային կապալի ակտիվ տարածումը, և՛ ագրոարդյունաբերական համալիրի կազմակերպումը, և՛ տնտհաշվարկի ավելի ու ավելի խոր արմատավորումը, և՛ այն խոշոր, թեպետև առայժմ որոնման բնույթ կրող նորամուծությունները, որոնք կոչված են տնտեսական, արտադրական գործունեության բոլոր տեղամասերում ամուր հաստատելու միմյանց հետ անխզելիորեն կապված երկու սկզբունքներ՝ ավելի՛ մեծ ինքնուրույնություն և ավելի՛ մեծ պատասխանատվություն։ Այդ աշխատանքի բացառիկ նշանակությունը ընդհանուր առմամբ որոշվում է նրանով, որ նրա նպատակն է ստեղծել տնտեսական այնպիսի պայմաններ, առանց որոնց ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման, նրա ինտենսիվացման հիմնադրույթները կարող են, ուղղակի ասենք, օդում կախված մնալ։

Բարձրարտադրողական տեխնիկան՝ բազմապատկած դրա կիրառման ընդհանուր տնտեսական շահագրգռության հետ. ահա թե իսկապես միայն ինչը կարող է իրողություն դարձնել հասունացած տնտեսական բեկումը, ապահովել երկու՝ գիտատեխնիկական և սոցիալական հեղափոխությունների միացումը, նոր ուժով բացահայտել արտադրության սոցիալիստական կազմակերպման առավելությունները։ Իսկ այդ առավելություններից գլխավորը, ինչպես Լենինն էր սովորեցնում, այն է, որ սոցիալիզմը աշխատավոր զանգվածների համար հնարավորություն է ստեղծում «իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (ԵԼԺ, հ. 35, էջ 230)։

Մեր երկրի պատմությունը ցույց է տալիս, թե ինչպիսի վեհ, անօրինակ աշխատանքային մեծագործությունների է ընդունակ այն ժողովուրդը, որը գիտակցում է, որ ինքը աշխատում է սեփական բարօրության համար, իր շահերի համար։ Եվ մեզ համար այժմ հատկապես կարևոր է ամրապնդել ու զարգացնել այդպիսի գիտակցությունը։ Ինչո՞ւ հատկապես այժմ։ Քանի որ արտադրության ինտենսիվացումը պարզապես անհնար է առանց գործի նկատ-

ինք, աշխատի մի բարձր նպատակի համար՝ ապահովել յուրաքանչյուրի անմիջական մասնակցությունը պետության և հասարակության գործերի կառավարմանը։

Սոցիալիզմն իր առավելություններն իրականացնում է դեմոկրատիայի միջոցով։ Կուսակցության ղեկավար դերի աճը և սոցիալիստական դեմոկրատիայի խորացումը միասնական, ամբողջական, օրինաչափ պրոցես են։ Կուսակցությունն այսուհետև էլ պետք է ժողովրդական իշխանության իրականացման նոր, է՛լ ավելի արդյունավետ միջոցների լայն որոնում կատարի, հասնի պրակտիկայում ստուգված նրա ձևերի լավագույն օգտագործմանը։ Այդ աշխատանքում այսօր ծանրության կենտրոնը տեղափոխվում է այն լայն իրավունքների լրիվ և հետևողական իրականացման վրա, որոնցով օժտված են սովետները, աշխատավորական կոլեկտիվները, մեր դեմոկրատական սիստեմի բոլոր օղակները։

Այդպես և միայն այդպես կարելի է ընդգրկել հասարակության առջև ծառացած խնդիրների ամբողջ սպեկտրը, հաշվի առնել բնակչության բոլոր դասակարգերի ու դասերի շահերի յուրատեսակությունը, ավելի լավ կարգավորել ժողովրդի հետ կուսակցության կենդանի կապերի համակարգը։

Այժմ առաջնակարգ կարևորության խնդիր է քաղաքական սիստեմի յուրաքանչյուր օղակի աշխատանքի բարելավումը, այն մասսաների նախաձեռնությունը կասեցնող բյուրոկրատական, տեղայնական, գերատեսչական նստվածքներից զտելը։ Ոչ պակաս կարևոր է հասնել ինչպես սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, հասարակական մյուս կազմակերպությունների ֆունկցիաների առավել հստակ սահմանազատմանը, այնպես էլ կուսակցության ղեկավարությամբ նրանց սերտ փոխգործողությանը։ Այստեղ ևս պետք է գործի ուժերի խնայողության յուրատեսակ օրենքը, որը թույլ կտա, այսպես ասած, նվազագույն ծախսումներով ամենամեծ և ամենաառավել կայուն արդյունքներ ստանալ։

Հատուկ ուշադրության է արժանի պետական ապարատի աշխատանքի, կառավարման մարմինների կատարելագործման հարցը։ Այդ հարցը մի անգամ չէ, որ բարձրացվել է։ Եվ արդեն քիչ բան չի արված։ Սակայն գործն ամբողջությամբ վերցրած առայժմ դանդաղ է առաջ ընթանում։ Եվ առաջին հերթին նրա համար, որ որոշ ընկերներ դա ներկայացնում են պարզունակ, փորձելով, օրինակ, ապարատի կրճատման խնդիրը լուծել մեխանիկորեն, չփոխելով կառավարման գոյություն ունեցող կառուցվածքները։ Նման մոտեցումը անհրաժեշտ արդյունք չի տալիս և տալ էլ չի կարող։ Այդպիսի մեթոդով կրճատված հաստիքները արագորեն վերականգնվում են, երբեմն էլ աճում։

Ապարատի կրճատումը պետք է հանդիսանա դրա ռացիոնալացման նպատակով տարվող քրտնաջան աշխատանքի յուրատեսակ հանրագումար։ Խոսքը բյուրոկրատական քաշքշուկ առաջացնող ավելորդ օղակների վերացման մասին է, կառավարչական աշխատանքի կազմակերպման ու տեխնիկական հագեցվածության բարելավման մասին։ Ըստ երևույթին, հարկավոր է յուրատեսակ մի կոնցեպցիա, որի հիման վրա կարելի լինի մշակել կառավարման այս կամ այն մարմնի օպտիմալ կառուցվածքը։ Ընդ որում, հնարավոր է, որ պահանջվի նույնիսկ ինչ-որ նոր օղակներ ստեղծել, բայց կրճատումը ընդհանուր առմամբ անպայման պետք է։

Որքան էլ ապարատը լավ լինի, յուրաքանչյուր ղեկավար մշտապես պետք է հանդիպում, անմիջական շփումներ որոնի կուսակցական մասսայի, աշխատավորների հետ։ Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամները, քարտուղարները սիստեմատիկաբար անցկացնում են այդպիսի հանդիպումներ։ Եվ դրանք շատ բան են տալիս։ Ամբողջությամբ վերցրած մեզանում վատ չի գործում նաև կուսակցական ինֆորմացիայի համակարգը, որը թույլ է տալիս նրբազգացությամբ նկատել մարդկանց տրամադրությունը, ուսումնասիրել նրանց կարծիքներն ու առաջարկությունները։



Միևնույն ժամանակ մի շարք դեպքերում տեղական կուսակցական մարմինները, գերատեսչությունների և հիմնարկությունների ղեկավարները բավականաչափ տեղեկություն չունեն բացասական երևույթների մասին կամ էլ պարզապես խույս են տալիս դրանցից, անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում իրադրության առողջացման համար։ Այդպես եղավ Ուզբեկստանում, Ռոստովի մարզում, Կրասնոդարի երկրամասում։ Ինչպես հայտնի է, հարկ եղավ դրությունն այնտեղ վճռականորեն ուղղել։ Եվ, ցավոք, ոչ տեղական կուսակցական կազմակերպությունների նախաձեռնությամբ։ Իսկ չէ որ այնտեղ հասարակական կարծիքի ծանրաչափը վաղուց արդեն հեռանում էր «պարզ է» նշանից։

Կուսակցության ղեկավար դերի ամրապնդման հուսալի ուղին լենինյան նորմերի ու սկզբունքների, լենինյան ոճի հետևողական պահպանումն է կուսակցական կոմիտեների, պետական, տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների գործունեության մեջ։ Դրանք փորձված են պայքարի ու ստեղծագործության տասնամյակներով և մնում են որպես մեր աշխատանքի կատարելագործման կարևորագույն ուղենիշներ։ Արդյոք հարկ կա՞ ասելու, որ այդ սկզբունքների ամենուրեք ներդրումը հնարավոր է հենց նրա համար, որ դրանք արտահայտում են կուսակցության բնույթը, մեր կարգերի, սոցիալիստական պետության էությունը։

Այստեղ, անշուշտ, օրինակ պետք է տա կուսակցությունը և ամենից առաջ ներկուսակցական աշխատանքի կազմակերպմամբ, ներկուսակցական հարաբերությունների հասունությամբ, կուսակցական ղեկավարման բուն ոճով։ Կուսակցական որոշումների լայն քննարկումը, սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կուսակցական բոլոր ղեկավար մարմինների աշխատանքի հրապարակայնությունը, կուսակցական ամբողջ մասսայի ակտիվ մասնակցությունը քաղաքականության մշակմանը, քննարկմանը և խիստ կարգապահությունը ընդունված որոշումների իրականացման գործում՝ այսպիսիք են ՍՄԿԿ-ի ներկուսակցական կյանքի տարբերիչ գծերը։

Մեզ, կոմունիստներիս համար առաջնակարգ նշանակություն ունի, իհարկե, դեմոկրատական ցենտրալիզմի փորձված սկզբունքը։ ՍՄԿԿ-ում այն ընդունված է բոլորի կողմից և հարկ չկա ապացուցելու նրա անանց նշանակությունը։ Կենտրոնական կոմիտեն մշտական ուշադրություն է դարձնում մի կողմից՝ մեր կուսակցության մեջ բոլոր մակարդակներում դեմոկրատիզմի զարգացմանը, խորացմանը, մյուս կողմից՝ ընդունված որոշումների իրականացման գործում ցենտրալիզմի ամրապնդմանը, կազմակերպվածությանը և միասնությանը։ Այդ երկու միմյանց հետ փոխադարձաբար կապված սկզբունքներից յուրաքանչյուրի՝ դեմոկրատիզմի կամ ցենտրալիզմի, նսեմացումը հղի է լուրջ սխալներով։

Առաջիկա կուսակցական համագումարի տարում բացառիկ կարևոր է ուշադիր ուսումնասիրել վերջին ժամանակներս կուսկազմակերպությունների գործունեության մեջ երևան եկած ամբողջ նորը, հետաքրքրականը, ստվերի մեջ չթողնելով, իհարկե, նաև թերությունները։ Գոհունակությամբ կարելի է նշել, որ մի շարք հանրապետական, երկրամասային, մարզային կուսակցական կոմիտեների աշխատանքում սկսել է ավելի բացահայտ դրսևորվել ստեղծագործական ջիղը։ Տնտեսության, գիտության, մշակույթի ղեկավարման տարբեր տեղամասերում լայն ճակատով էքսպերիմենտ են կատարում Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի, Լիտվայի կոմկուսների կենտկոմները, կուսակցության Մոսկվայի քաղաքային, Կրասնոյարսկի երկրամասային, Սվերդլովսկի մարզային կոմիտեները։ Կանոն է դառնում սկզբնական կուսակցական կազմակերպություններում այն խոշոր պրոբլեմների նախնական լայն քննարկումը, որոնք լսվելու են կուսակցական կոմիտեների պլենումներում և բյուրոներում, կուսակցական համագումարներում ու կոնֆերանսներում։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը հավանություն տվեց ՍՄԿԿ Լենինգրադի մարզ-

կոմի փորձին, որը էկոնոմիկայի ինտենսիվացման տերիտորիալ-ճյուղային ծրագիր է մշակել ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական նվաճումների արմատավորման արագացման հիման վրա։ Այդ փորձի արժեքը, բացի մնացյալից, կայանում է նրանում, որ այն թելադրում է սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարման մեթոդներից մեկը, այսպես ասած, տերիտորիալ այն հատվածքում, որտեղ առայժմ չլուծված շատ հարցեր են մնում։

Իհարկե, նախաձեռնություն էլ կա, նախաձեռնություն էլ։ Կենտկոմն այսուհետ ևս ամեն կերպ կխրախուսի կուսակցության տեղական կոմիտեների նախաձեռնությունը այն պրոբլեմների լուծման գործում, որոնք կապված են աշխատանքային, հումքային և էներգետիկ ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, մասսայական պահանջարկ ներկայացնող ապրանքների, կենցաղային սպասարկումների գծով բնակչության պահանջմունքների բավարարման հետ։ Բայց տագնապալից է ահա թե ինչը։ Երբեմն տեսնում ես, թե ինչպես առանձին ղեկավարների եռանդը նշանակալից չափով ծախսվում է ոչ այնքան օգտակար, որքան պատվախնդրական օբյեկտների կառուցման վրա։ Եվ դրանք բարձրանում են ֆինանսավորման այսպես կոչված ոչ կենտրոնացված աղբյուրների հաշվին։ Իսկ ստուգելիս պարզվում է, որ միջոցները վերցվում են պլանային օբյեկտներից, ձգձգվում են կապիտալ ներդրումների իրացման ժամկետները, պետությունը ուղղակի վնաս է կրում։ Նման «նախաձեռնությունների» դեմ մենք վճռականորեն պետք է պայքարենք։

Հաստատակամորեն կատարելագործելով իրենց գործունեության ոճը, կուսակցական կոմիտեները կոչված են ակտիվորեն ներգործել պետական ու տնտեսական մարմինների աշխատանքի ոճի վրա։ Ներգործել ամենից առաջ իրենց սեփական աշխատանքի օրինակելի դրվածքով, պահանջկոտության բարձրացումով։

Անհրաժեշտ է հատկապես խստացնել անկազմակերպվածության ու կատարողական կարգապահության խախտման համար պատասխանատվությունը։ Առանց խստագույն կարգապահության ամենագեղեցիկ որոշումներն ու մտադրությունները մնում են սոսկ բարի ցանկություն։ Ընդ որում մեր ըմբռնողությամբ կարգապահությունն ամենևին էլ դեմոկրատիայի ինչ-որ հակադրությունը չէ։ Ընդհակառակն, այն թույլ է տալիս գործնականում իրականացնել մեծամասնության շահերը, կուսակցության ու ժողովրդի կամքը։ Առանց կարգապահության ու հասարակական ամուր կարգուկանոնի դեմոկրատիան կմնա սոսկ գեղեցիկ ֆրազ։ Սակայն կարգապահությունը, անշուշտ, չպետք է կաշկանդի նախաձեռնությունը։ Գործի հստակ կազմակերպման համար մղվող պայքարը չպետք է վերածվի կազմակերպամոլության։

XXVII համագումարում մենք քննարկելու ենք ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների հարցը։ Կանոնադրությունը կուսակցության կյանքի օրենքն է, պատկերավոր ասած, դա մեր կուսակցական սահմանադրությունն է, և ամենայն ուշադրությամբ հարկավոր է ուսումնասիրել կուսակցական կազմակերպություններից ստացվող առաջարկությունները, ինչպես նաև եղբայրական սոցիալիստական երկրների կոմկուսների փորձը։ Մի խոսքով, կանոնադրության վրա աշխատել լրջախոհ, ստեղծագործաբար։ Դա, անկասկած, կծառայի կուսակցության դեմոկրատական հիմքերի հետագա ամրապնդմանը, բոլոր կոմունիստների համար խիստ և միասնական կարգապահության հաստատմանը, նրանց ակտիվության ու նախաձեռնության աճին, ներկուսակցական հարաբերությունների կատարելագործմանը։

Հեռու չէ նաև հաշվետու-ընտրական կամպանիան։ Այդ կապակցությամբ, կարծում եմ, տեղին է վերստին բարձրացնել մեր ժողովների և կոնֆերանսների բնույթի հարցը։

Ժողովներում պետք է տիրի ստեղծագործական որոնման, գործարարության, սկզբունքայնության, սեփական աշխատանքի գնահատմանը ինքնաքննադատական մոտեցման մթնոլորտ, իսկ դրա համար կոմունիստները պետք է վճռականորեն զինվեն ֆորմալիզմի դեմ։



Մենք ընտելացել ենք, օրինակ, հաշվետու զեկուցումների, որոշումների նախագծերի քննարկումն անվանել մտքերի փոխանակություն։ Իսկ արդյոք մի՞շտ են խոսակցության բովանդակությունն ու տոնը համապատասխանում այդ բառի իսկական իմաստին։

Զեկուցումներում հաճախ սառնասրտորեն շարադրվում են սոսկ բացարձակ անվիճելի, այբբենական ճշմարտություններ՝ մեկընդմեջ թվերով, բացի այդ էլ, ճիշտն ասենք, վերադաս ղեկավարությանն ուղղված բավական շատ դովերգությամբ։ Ուրեմն, զարմանալի ինչ կա, եթե կոմունիստները դրան պատասխանում են ոչ թե քննադատությամբ և ինքնաքննադատությամբ, ոչ թե պրոբլեմների գործնական քննարկմամբ, այլ ստանդարտ հավանություններով և վհատ ինքնահաշվետվություններով։ Բայց չէ որ քննարկման և քննադատության ազատությունը՝ կուսակցական կյանքի պարտադիր նորմերից մեկը, ենթադրում է կոնկրետ հարցի վերաբերյալ տարբեր հայացքների համադրում։ Հենց այդպիսի մոտեցումն էլ նպաստում է հրատապ պրոբլեմների կենդանի, բեղմնավոր քննարկմանը։

Դեռևս հնում ասում էին. եթե տարբեր կարծիքներ չկան, ապա ամենալավն ընտրել չես կարող։ Իսկական, այլ ոչ թե ցուցադրական միաբանությունը, որպես կանոն, ձեռք է բերվում այն բանից հետո, երբ հարցը խորապես կշռադատված և համակողմանիորեն կոլեկտիվ կերպով իմաստավորված է լինում։ Մի խոսքով, մենք ընկերական բանավեճերի, վիճաբանությունների կողմն ենք, բայց, իհարկե, խելամիտ, գործի հետ կապված վիճաբանությունների կողմը, որոնք և պսակվում են գործնականորեն օգտակար առաջարկություններով։

Ֆորմալիզմը տևակյաց է ու բազմադեմ։ Եվ նրա դրսևորումներից մեկը թղթաբարությունն է։ Ստեղծվում է այնպիսի տպավորություն, թե որոշ հիմնարկություններ իրենց աշխատանքը գնահատում են ոչ թե ենթակա տեղամասի գործերի փաստացի դրությամբ, այլ հրապարակած բանաձևերի, որոշումների և ամեն տեսակ հրահանգների քանակությամբ։ Ոչ ամենուր են վերացված նաև ղեկավարության մեթոդները բազմաթիվ և բազմամարդ հանձնաժողովների, խորհրդակցությունների միջոցով, որոնք միայն ժամանակ են խլում։ Ինչպես չհիշել այստեղ Լենինի դիտողությունը՝ ներշնչված Վ. Մայակովսկու «Ժողովամոլները» բանաստեղծությամբ։ «Բավական է տեսնել, թե մենք ինչպե՞ս ենք նիստեր անում, ինչպե՞ս ենք աշխատում հանձնաժողովներում, ասելու համար, որ հին Օբլոմովը մնացել է, և պետք է նրան երկար ժամանակ լվանալ, մաքրել, թափ տալ և քրքրել, որպեսզի որևէ բան դուրս գա» (ԵԼԺ, հ. 45, էջ 17)։

Քաղաքականությունն անցկացվում է մարդկանց միջոցով։ Լենինյան այս դրույթն սկզբունքային նշանակություն ունի կադրերի հետ տարվող կուսակցության աշխատանքի համար։ Կադրերով և ամենից առաջ կուսակցական կադրերով է պայմանավորված, թե որքան հստակ, ներդաշնակ և լարված են գործում աշխատավորական կոլեկտիվները, երկրի ժողովրդատնտեսական համալիրի բոլոր օղակները։ Կուսակցությունը կադրային քաղաքականությունը համարում է սովետական հասարակության բոլոր ոլորտների զարգացման վրա ազդելու գործուն միջոց, նրա առաջադիմության կարևոր պայմանը։

Սակայն կյանքը քարացած չէ, առաջադրում է նոր պահանջներ։ Այժմ, երբ հասունացել է հասարակության բոլոր ոլորտներում որակական խորը տեղաշարժերի անհրաժեշտությունը, կադրերի պրոբլեմը ձեռք է բերել հատուկ հնչեղություն։ Ահա թե ինչու Կենտրոնական կոմիտեն հարց է դնում ոչ թե պարզապես կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման, այլ արդի փուլում կադրային քաղաքականության վերաբերյալ։ Իսկ դա նշանակում է, որ հարկավոր են ժամանակակից պայմաններին համապատասխանող փոփոխություններ, կադրերի ընտրության, ուսուցման և առաջքաշման ամբողջ համակարգում նրանց գործունեության վերահսկողություն։

*Յուրաքանչյուր կոմունիստի հեղինակությունը, նրա անձնական օրինակի ուժը կուսակցության ուժն ու հեղինակությունն են։ Կոմունիստի գործերով և վարքով մարդիկ նշանակալից չափով դատում են կուսակցության, նրա քաղաքականության և գաղափարախոսության մասին։ Ահա թե ինչու կարևոր է պահպանել և ավելի ու ավելի բարձրացնել կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունը։ Կարևոր է ձգտել, որպեսզի նրա շարքերում լինեն իրոք ժողովրդի՝ բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության լավագույն ներկայացուցիչները։*

*Լավագույն, որովհետև կոմունիստներն իրենց վրա են վերցնում ողջ ամենադժվարինը, համարձակ, գործիմացությամբ դնում և լուծում են սոցիալական ու քաղաքական ամենաբարդ խնդիրներ, չեն վախենում իրենց ուսերին դրված պատմական պատասխանատվությունից, այլ կրում են այն իրենց կուսակցական, քաղաքացիական պարտքի լիակատար զգացումով։ Լավագույն, որովհետև կուսակցության մեջ են մտնում ոչ թե պատիվների ու արտոնությունների համար, այլ հանուն այն բանի, որպեսզի ծառայեն սոցիալիզմի բարձր իդեալներին, աշխատավոր ժողովրդի շահերին։*

*Հենց այս ամենն էլ կոմունիստներին դարձնում է, Մարքսի և Էնգելսի խոսքերով ասած, «ամենավճռական, միշտ դեպի առաջընթաց շարժմանը խթանող ուժը...»* (Соч., т. 4, стр. 437)*։ Այժմ, երբ XXVII համագումարին ընդառաջ գնալով, ՍՄԿԿ-ն անցկացնում է իր կուսակցական գործերի խստապահանջ ստուգատես, մեր հեղափոխական ուսմունքի հիմնադիրների այս խոսքերի հիշեցումը հատկապես տեղին է թվում։*

**«Коммунист», № 18, 1984 г.**

---

# «ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԼՈՒՅՍՈՎ» ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳԻՏԱԳՈՐԾՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՆ

*Ընկերնե՛ր։*

*Ի սրտե ողջունում եմ գիտագործնական կոնֆերանսի մասնակիցներին։*

*Կոնֆերանսը տեղի է ունենում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումից մեկուկես տարի հետո, պլենում, որը կուսակցական կազմակերպությունների ջանքերը նպատակամղեց գաղափարախոսական աշխատանքը վճռականորեն բարձրացնելու այն մեծ ու բարդ ստեղծարար խնդիրների մակարդակին, որ այսօր լուծում են կուսակցությունն ու ժողովուրդը, ավելի լավ հաշվի առնելու ժամանակակից միջազգային դրության իրողությունները, համաշխարհային ասպարեզում գաղափարախոսական պայքարի սրվելը։*

*Հասկանալի է, թե որքան կարևոր է համակողմանիորեն իմաստավորել կուտակված փորձը, հիմնավորապես վերլուծել, թե ինչպես են իրականացվում պլենումի գաղափարներն ու հիմնադրույթները։ Իսկ որ գլխավորն է՝ քննարկել և նշել, թե ինչ պետք է արվի, առաջին հերթին ինչի վրա պետք է կենտրոնացվի ուշադրությունը, որպեսզի մեր գաղափարախոսության ակտիվ, վերափոխիչ ուժը առավել լրիվ օգտագործվի տնտեսական ու սոցիալական կենսական պրոբլեմների լուծման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։*

*Կոնֆերանսի թեման անչափ հրատապ է։ Կուսակցությունը, ժողովուրդը այսօր զինված են զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայով, որը մեզ միանգամայն գիտական պատկերացում է տալիս մեր մոտակա և հեռանկարային նպատակների մասին, դրանց հասնելու ուղիների մասին, ընկած է ՍՄԿԿ-ի ծրագրի նախապատրաստվող նոր խմբագրույթի հիմքում։ Խորապես ըմբռնել զարգացած սոցիալիզմի կատարելագործման՝ կուսակցության մշակած համակողմանիորեն կշռադատված ու ռեալիստական ստրատեգիայի քաղաքական իմաստը, կարողանալ այդ ստրատեգիան սերտորեն շաղկապել պրոպագանդիստական, դաստիարակչական աշխատանքի հետ՝ ահա գաղափարախոսական կադրերի, ամբողջ կուսակցական ակտիվի առաջնագույն պարտքը։*

*Այսօր մենք կարող ենք լիակատար իրավունքով ասել, որ Կենտկոմի հունիսյան պլենումի և դրան հաջորդած պլենումների գաղափարները մտել են միլիոնավորների գիտակցության մեջ, նյութականանում են պրակտիկ գործերում, ժողովրդական տնտեսության դրական վերափոխումների, մասսաների բարեկեցության անշեղ վերելքի, նրանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության աճի մեջ։ Դրա հետ մեկտեղ պետք է առաջ նայել, պարզորոշ*

պատկերացնել նաև չլուծված պրոբլեմները, ավելի արագ ընթանալ դեպի նշված բնագծերը։

Վերջին ժամանակներս ես քանիցս առիթ եմ ունեցել նշելու, որ մեր հասարակության առջև ծառացած են որակապես նոր խնդիրներ, որոնք պահանջում են մոբիլիզացնել ժողովրդի ամբողջ ստեղծագործական պոտենցիալը, որոշակիորեն վերակողմնորոշել հասարակական գիտակցությունը։ Եվ այստեղ բացառիկորեն մեծ է գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի նշանակությունը։ Այն միլիոնավոր սովետական մարդկանց անձնվեր պայքարի է հանում հանուն արտադրության ինտենսիվացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հանուն նյութական ռեսուրսների տնտեսման և բարձր արտադրողականության յուրաքանչյուր աշխատատեղում։

Կուսակցական կոմիտեները ունեն մասսաների կազմակերպման ու դաստիարակության ձևերի, եղանակների ու մեթոդների հարուստ զինանոց։ Դրանք ամենուրեք և հմտորեն օգտագործելը աշխատանքի լենինյան ոճի կարևորագույն պահանջներից մեկն է։ Այդ ոճին հատուկ են իրատեսությունը, լայնորեն գիտության ու գիտելիքի վրա հենվելը, մարդկանց շահերի ու պահանջմունքների հաշվառումը։

Միայն այդ հիմքի վրա կարելի է ապահովել մեր իդեալների, Հոկտեմբերի երկրի պատմական նվաճումների, նրա ներքին ու արտաքին քաղաքականության պրոպագանդայի համոզչությունն ու հասկանալիությունը, սովետական մարդկանց մեջ գաղափարական բարձր համոզվածության, բարոյական տոկունության, հայրենասիրական ու ինտերնացիոնալիստական զգացմունքների ձևավորումը։ Այդպիսի պրոպագանդան արդյունավետ զենք է դասակարգային հակառակորդի ամեն տեսակ «հոգեբանական» գրոհների դեմ, սոցիալիզմը վարկաբեկելու, մեր առաջընթացը արգելակելու նրա փորձերի դեմ։

Վստահ եմ, որ գաղափարախոսական, պրոպագանդիստական պրակտիկայի գործարար վերլուծությունը, կոնֆերանսի մասնակիցների կոնկրետ առաջարկությունները կնպաստեն ՍՍՀՄ-ում կառուցված սոցիալիզմի կատարելագործման մասշտաբային ու պատասխանատու խնդիրների լուծմանը, ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստման կապակցությամբ կուսակցության մեջ ծավալված տեսական ու պրոպագանդիստական աշխատանքի ուժեղացմանը։

Ձե՛զ, թանկագին ընկերնե՛ր, ամբողջ հոգով մաղթում եմ հաջող աշխատանք։

Կ. ՉԵՌՆԵՆԿՈ

---

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ 1905—1907 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի հունվարին լրանում է Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության՝ իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխության, 80 տարին։ Այդ հեղափոխությունը քաղաքական կյանքի արթնացրեց բանվորների ու գյուղացիների ամենալայն զանգվածներին, բնակչության այլ խավերի, նշանավորեց պատմական նոր ժամանակաշրջանի՝ սոցիալական խոր ցնցումների ու հեղափոխական ճակատամարտերի ժամանակաշրջանի սկիզբը։ Չնայած պարտությանը, հեղափոխությունը սասանեց ինքնակալակալվածատիրական կարգերի հիմքերը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ՝ հանդիսացավ մեծ Հոկտեմբերի «գլխավոր փորձը»։

Ռուսաստանի առաջին հեղափոխությունը նախապատրաստվել էր երկու դարերի սահմանագծում երկրի տնտեսական ու քաղաքական զարգացման ողջ ընթացքով։ Սոցիալ-տնտեսական զարգացման օբյեկտիվ պահանջմունքներն անհաշտելի հակասության մեջ էին մտել իր դարն ապրած քաղաքական վերնաշենքի հետ։ Այդ հակասությունները ծայրահեղորեն սրվել էին հեղափոխության նախօրեին Ճապոնիայի դեմ մղված պատերազմում կրած պարտությամբ։ Դրանք խորանում էին ցարիզմի կողմից շարունակվող քաղաքական, հոգևոր ու ազգային ճնշումով, օտարերկրյա մոնոպոլիստական կապիտալի բռնացումով, որ հարուցում էր աշխատավորների ավելի ու ավելի ակտիվ հակազդեցությունը։ Բացահայտ քաղաքական պայքարի ասպարեզ էր մտնում բանվոր դասակարգը, որին ոգեշնչում և ղեկավարում էր իր մարտական ավանգարդը՝ բոլշևիկյան կուսակցությունը։ Ընդլայնվում էր գյուղացիական շարժումը։ Գյուղացիությունը ձգտում էր ոչնչացնել կալվածատիրական հողատիրությունը և գյուղում ճորտատիրության մյուս մնացուկները։

Ռուսաստանը դարձել էր իմպերիալիզմի հակասությունների հանգուցակետը, նրա առավել թույլ օղակը։ Ռուսաստանում ստեղծվել էին հեղափոխության օբյեկտիվ պայմաններ և օբյեկտիվ նախադրյալներ։ Այնտեղ էր տեղափոխվում համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը։

1905—1907 թվականների հեղափոխությունը պատմության մեջ մտավ որպես նոր տիպի բուրժուադեմոկրատական հեղափոխություն։ Պատմության մեջ առաջին անգամ որպես հեղափոխության հեգեմոն, որպես բոլոր աշխատավոր զանգվածների առաջնորդ հանդես եկավ բանվոր դասակարգը։ Իր սոցիալ-տնտեսական բովանդակությամբ լինելով բուրժուադեմոկրատական, այդ հեղափոխությունը պայքարի միջոցներով և ձևերով պրոլետարական էր։

Բանվոր դասակարգի ղեկավարի դերի պայմաններում հեղափոխության հրի մեջ կազմավորվում էր բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հետ և աշխատավորության մյուս ոչ պրոլետարական խավերի հետ։ Ուժեղանում էին հեղափոխական ելույթները բանակում և նավատորմում։ Դեմոկրատական ուժերի ընդհանուր հոսանքի մեջ միախառնվում էր ազգային-ազատագրական հարաճուն շարժումը։ Իրենց ռուս եղբայրների հետ միասին ցա-

րիզմի դեմ ուղղված պայքարի ելան Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի, Միջին Ասիայի և մյուս ազգային շրջանների բանվորներն ու գյուղացիները։ Ռուսաստանի բանվոր դասակարգը, բոլշևիկների ղեկավարությամբ, բարձր պարզեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, ստեղծելով սոցիալական ու ազգային ճնշման դեմ բոլոր ազգությունների աշխատավորների պայքարի միասնական ճակատ։ «Հինգ թվականը,— ընդգծում էր Վ. Ի. Լենինը,— միավորեց Ռուսաստանի բոլոր ազգերի բանվորներին»։

Ժողովրդի ազատագրական պայքարի ավանգարդում ընթանում էր Վ. Ի. Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցությունը՝ նոր տիպի կուսակցությունը, որը գործնականում իրականացրեց հեղափոխական տեսության միացումը բանվորական շարժման հետ։ 1905—1907 թվականների հեղափոխությունը համաշխարհային պատմության մեջ առաջին հեղափոխությունն էր, որի ընթացքում մարքսիստական կուսակցությունը հանդես եկավ որպես ինքնուրույն քաղաքական ուժ, իր ծրագրով, հստակորեն մշակած ստրատեգիայով ու տակտիկայով։ Ամուր հենվելով աշխատավոր զանգվածների վրա, արտահայտելով նրանց իղձերն ու ձգտումները, կուսակցությունը նրանց քաղաքականապես դաստիարակում և կոփում էր դասակարգային մարտերի ընթացքում, համախմբում պրոլետարիատի շուրջը։

Հեղափոխության տարիներին բացահայտվեց Վ. Ի. Լենինի ստեղծագործական հանճարը որպես մեծ տեսաբանի և պրոլետարիատի առաջնորդի։ Ռևիզիոնիզմի և օպորտունիզմի դեմ մղված անզիջում պայքարում նա մարքսիզմը պաշտպանեց և զարգացրեց պատմական նոր պայմանների համեմատ։ Իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուադեմոկրատական հեղափոխության առանձնահատկությունների վերաբերյալ, հեղափոխության շարժիչ ուժերի և սոցիալիստականի վերաճելու ուղիների, պրոլետարիատի հեգեմոնիայի և դասակարգային դաշինքների ստրատեգիայի, պրոլետարիատի ու գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի վերաբերյալ, ժամանակավոր հեղափոխական կառավարություն ստեղծելու, ագրարային ու ազգային հարցերի լուծման ուղիների վերաբերյալ, նոր տիպի պրոլետարական կուսակցության ղեկավար դերի, որպես հեղափոխության հաղթանակի կարևորագույն պայմանի, վերաբերյալ Լենինի գաղափարները իրենցով նշանավորեցին մարքսիստական ուսմունքի զարգացման մի նոր փուլ։ Այդ գաղափարները բոլշևիկյան կուսակցությանը թույլ տվեցին մշակել գիտականորեն հիմնավորված ստրատեգիա ու տակտիկա, սահմանել աշխատավորների պայքարի մերձավորագույն և հեռանկարային խնդիրները։

1905—1907 թվականների հեղափոխությունը մասսաներին հարստացրեց քաղաքական մեծ փորձով, նրանց ոգեկոչեց պատմական գիտակցական ստեղծագործության։ Հայտնագործվեցին դասակարգային պայքարի նոր ձևեր ու միջոցներ։ Աշխատավորներն առաջին անգամ կիրառեցին մի այնպիսի հուժկու զենք, ինչպիսին է մասսայական քաղաքական գործադուլը։ Հեղափոխության գագաթը, նրա բարձրակետը եղավ Մոսկվայի դեկտեմբերյան զինված ապստամբությունը։ Ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, «Ժողովուրդը մարտական մկրտություն ստացավ։ Նա կոփվեց ապստամբության մեջ։ Նա նախապատրաստեց այն մարտիկների շարքերը, որոնք հաղթեցին 1917 թվականին»։

Որպես հեղափոխական իշխանության մարտական մարմիններ հանդես եկան Իվանովո—Վոզնեսենսկում, Պետերբուրգում, Մոսկվայում, Ռոստովում, Սարատովում, Բաքվում, Կիևում, Եկատերինոսլավում, Սևաստոպոլում, Կոստրոմայում, Չիտայում, Կրասնոյարսկում, Իրկուտսկում, Սմոլենսկում, Ռևելում, Ուրալում, ուրիշ շատ վայրերում ժողովրդի ստեղծած բանվորների սովետները, իսկ դրանցից հետո՝ գյուղացիների սովետները և զինվորների դեպուտատների սովետները։ Վ. Ի. Լենինը, հանձին սովետների, տեսավ ապագա սոցիալիստական պետականության նախատիպը, որը վերջնականապես հաստատվեց հաղթական Հոկտեմբերի շնորհիվ։



Արտահայտելով պատմական զարգացման ընդհանուր պահանջմունքները, Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխությունը հսկայական միջազգային նշանակություն ունեցավ։ Հեղափոխությունն արժանացավ Եվրոպայի, Ամերիկայի և Ասիայի ճնշված զանգվածների ջերմ համակրանքին և պաշտպանությանը։ Ամրապնդվեց բանվոր դասակարգի ինտերնացիոնալ համերաշխությունը։ Շատ երկրներում բարձրացավ հեղափոխական և ազգային-ազատագրական շարժման ալիքը, մոտեցնելով կապիտալիզմի համաշխարհային սիստեմի ընդհանուր ճգնաժամի սկիզբը։

Ռուսաստանի առաջին հեղափոխության ընթացքում ազատության ու դեմոկրատիայի համար շահագործողների դեմ մղված մարտերի ձեռք բերված փորձը էապես հարստացրեց դասակարգային պայքարի տեսությունն ու պրակտիկան, ժողովրդին օգնեց 1917 թ. փետրվարին տապալել ատելի ցարիզմը, իսկ հոկտեմբերին՝ ոչնչացնել բուրժուազիայի տիրապետությունը։ Այդ փորձը իր անանց նշանակությունն այսօր էլ պահպանում է այն ժողովուրդների համար, որոնք հանդես են գալիս հանուն սոցիալական ու ազգային ազատագրության, հանուն սոցիալիզմի և խաղաղության։

Մեր երկիրը սոցիալիստական շինարարության ընթացքում անցել է պայքարի ու հաղթանակների փառավոր ուղի։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը վերացրեց շահագործման բոլոր ձևերը, կենսագործեց սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը։ Պատմական կարճ ժամկետներում հաղթահարվեց դարավոր հետամնացությունը։ ՍՍՀՄ-ը վերածվեց ինդուստրիալ-ագրարային հզոր տերության։ Իրականացվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը, կատարվեց կուլտուրական հեղափոխություն։ Ստեղծվեց բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անխախտ դաշինք։ Անհամեմատ բարելավվել են ժողովրդի կենսապայմանները։ ՍՍՀՄ-ում հաստատվել է դեմոկրատիայի նոր տիպ՝ սոցիալիստականը, որը քաղաքացիների համար երաշխավորում է այնպիսի իրավունքներ և ազատություններ, որպիսիք չկան և չեն էլ կարող լինել բուրժուական պետության պայմաններում։ Իսկական ծաղկման են հասել բոլոր սովետական հանրապետությունները։ Իրողություն են դարձել ժողովուրդների հավասարությունը, բարեկամությունն ու եղբայրությունը։

Երկիրը մեծ քայլ է արել կոմունիզմի առաջին փուլի շրջանակներում և ներկայումս թևակոխել է նոր, պատմականորեն տևական փուլը՝ զարգացած սոցիալիզմի փուլը։ Այդ փուլի պլանաչափ և համակողմանի կատարելագործումը կազմում է կուսակցության ու ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությունը տեսանելի հեռանկարում։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում է, որ տեղի է ունենում աստիճանական առաջընթացը դեպի կոմունիզմ։ Հարթելով սոցիալ-տնտեսական առաջընթացի ուղիները, ՍՄԿԿ-ն առաջնորդվում է կուսակցության XXVI համագումարի, Կենտրոնական կոմիտեի հետհամագումարյան պլենումների որոշումներով, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Կ. Ու. Չեռնենկոյի ելույթներով։

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման բազմազան աշխատանքի հանգուցային օղակը հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացումն է, արտադրողական ուժերը որակապես նոր մակարդակի հասցնելը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացումը գիտատեխնիկական նվաճումների արմատավորումն արագացնելու, էկոնոմիկայի կառավարման համակարգն ու տնտեսական մեխանիզմը վերակառուցելու, մասսաների աշխատանքային նախաձեռնությունն ու ակտիվությունը զարգացնելու հիման վրա։

Տնտեսական կայուն հիմքի վրա, սովետական մարդկանց աշխատանքի ավելի ու ավելի ծանրակշիռ արդյունքների վրա հիմնվելով է լուծվում ժողովրդի նյութական ու հոգևոր մակարդակի անշեղ բարձրացման գլխավոր խնդիրը։ Կուսակցությունը հատուկ ուշադրություն է նվիրում սոցիալական արդարության՝ սոցիալիզմին ներհատուկ սկզբունքի համակողմանի հաստատ-

ման ու զարգացմանը։ Մեր հասարակության կարևորագույն նպատակը և դեպի կոմունիզմ աստիճանական առաջընթացի պայմանը մնում է նոր մարդու ձևավորումը, անձի գաղափարաբարոյական վեհացումը։

Լուծելով հասարակության քաղաքական սիստեմի կատարելագործման, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը զարգացնելու խնդիրները, կուսակցությունը առաջնահերթ նշանակություն է տալիս աշխատավորների լայն մասնակցությանը հասարակության գործերի կառավարմանը, նրանց դեմոկրատական իրավունքների ընդլայնմանը՝ պարտականությունների զուգորդությամբ, համապետական աշխատանքում աշխատավորական կոլեկտիվների ավելի ակտիվ ընդգրկմանը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում ավելի է աճում ժողովրդական դեպուտատների սովետների դերը։ Ծնունդ առնելով Ռուսաստանի առաջին հեղափոխության ընթացքում, դրանք կազմում են մեր պետության քաղաքական հիմքը, ապահովում են իսկական ժողովրդապետություն։ Սովետները ամենալայն զանգվածների ստեղծագործական եռանդը կենտրոնացնում և նպատակամղում են սոցիալ-տնտեսական ու քաղաքական հրատապ խնդիրների լուծմանը։ Նրանց գործունեությունը համապատասխանում է բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների, սովետական հասարակության բոլոր սերունդների շահերին։

ՍՄԿԿ-ն մշտապես հոգում է բոլոր աստիճանների սովետների լիազորություններն ընդլայնելու, նրանց աշխատանքում օրենսդրության, կառավարման ու վերահսկողության միասնության լենինյան սկզբունքը հետևողականորեն իրականացնելու, կուսակցական ու սովետական մարմինների ֆունկցիաները հստակորեն սահմանազատելու, սովետների հսկայական պոտենցիալը լրիվ օգտագործելու մասին, այն մասին, որ ՍՍՀՄ սահմանադրության մեջ վավերագրված նրանց լիիշխանությունը իր հետևողական արտահայտությունը գտնի գործունեության թե՛ բովանդակության և թե ոճի մեջ։

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը հետևողականորեն վարում են խաղաղության լենինյան արտաքին քաղաքականություն։ Այնպիսի պայմաններում, երբ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցների մեղքով, որոնք փորձում են ետ շրջել պատմության ընթացքը, ժողովուրդներին պարտադրել իրենց կամքը, սրվել է միջազգային իրադրությունը, առանձնապես մեծ է սոցիալիստական ընկերակցության երկրների՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության այդ հուսալի հենարանի, միասնության և համախմբվածության նշանակությունը։ Վարշավայի պայմանագրով միավորված եղբայրական սոցիալիստական երկրները իրենց տրամադրության տակ անհրաժեշտ ամեն ինչ ունեն պատերազմի հրձիգներին վճռական հակահարված հասցնելու համար։ Համակողմանի զարգացում է ստանում և մշտապես խորանում է ՏՓԽ-ի անդամ երկրների տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցությունը։

Խաղաղության համար, միջուկային աղետի կանխման համար մղվող պայքարում աճում է միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, բոլոր մայրցամաքների հակաիմպերիալիստական ու հակապատերազմական ուժերի ակտիվությունը։

Սովետական ժողովուրդը վստահությամբ է նայում ապագային։ Նա ջերմորեն հավանություն է տալիս և անսահմանորեն պաշտպանում է կոմունիստական կուսակցության քաղաքականությունը, կուսակցություն, որը համոզիչ կերպով ապացուցել է իր գաղափարական, կազմակերպական և ստեղծարար ուժը, հասարակությունը արդարացի, սոցիալիստական սկզբունքներով վերակառուցելու համար, կոմունիզմի գործի համար մղվող պայքարում մասսաներին ղեկավարելու իր ընդունակությունը։ Կուսակցության ու ժողովրդի միաձույլ միասնությունը սովետական կարգերի անսասանության, մեր հայրենիքի հետագա ծաղկման աղբյուրն է։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.

Ռուսաստանի առաջին հեղափոխության 80-ամյակը լայնորեն նշել որպես կուսակցության ու երկրի պատմության, համաշխարհային կոմունիստական,



բանվորական ու ազգային-ազատագրական շարժման նշանակալից իրադարձություն։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, սովետական մարմիններին, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններին, զինված ուժերի քաղաքական մարմիններին՝ հոբելյանի կապակցությամբ քաղաքական ու կազմակերպչական ակտիվ աշխատանք ծավալել։ Այդ աշխատանքը նպատակամղել սովետական հայրենասիրության դաստիարակմանը, կուսակցության ու ժողովրդի միասնության հետագա ամրապնդմանը, աշխատավորների է՛լ ավելի սերտ համախմբմանը ՍՄԿԿ-ի շուրջը, մասսաների մոբիլիզացմանը՝ հաջողությամբ կատարելու կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումները, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները, արժանավայել դիմավորելու ՍՄԿԿ XXVII համագումարը։

Գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքում ջանքերը կենտրոնացնել հեղափոխական ավանդույթների պրոպագանդման վրա, նոր հասարակության ստեղծման գործում սովետական ժողովրդի հերոսական մեծագործությունների պրոպագանդման, ՍՄԿԿ-ի համաշխարհային պատմական փորձի, ժողովրդական դեպուտատների սովետների՝ որպես սոցիալիստական շինարարության հզոր զենքի, հարաճուն դերի պրոպագանդման վրա։ Վառ ու համոզիչ կերպով բացահայտել զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործման, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալման ասպարեզում կուսակցության ու ժողովրդի բազմակողմանի գործունեությունը։

Մոսկվայում անցկացնել դեկտեմբերյան ապստամբության 80-ամյակին նվիրված հանդիսավոր նիստ, Իվանովո քաղաքում՝ առաջին սովետների 80-ամյակին նվիրված համամիութենական գիտագործնական կոնֆերանս։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ Սովետական Միության կոմունիստները, երկրի բոլոր աշխատավորները ըստ արժանվույն կդիմավորեն լենինյան կուսակցության ու ժողովրդի պատմության փառավոր տարեթիվը՝ Ռուսաստանի առաջին հեղափոխության 80-ամյակը, այդ հոբելյանը աշխատանքային նոր մեծագործություններով կնշանավորեն ի բարօրություն մեր մեծ սոցիալիստական հայրենիքի, հանուն սոցիալիզմի ու խաղաղության գործի հաղթանակի։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի հունվարի 8-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. Ներսիսյանը, Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, Կիրովականի տրիկոտաժի արտադրական միավորման կարող բանվորուհի ընկ. Գ. Ա. Ղազարյանը, Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստր ընկ. Է. Ս. Գաբրիելյանը, «Մասիս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Հ. Խ. Հարությունյանը, Կալինինոյի շրջանի Միխայլովկա գյուղի կոլտնտեսության կթվորուհի ընկ. Գ. Մ. Մուստաֆաևան, Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր ընկ. Ս. Տ. Հախումյանը, արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապի հայկական ընկերության նախագահ ընկ. Պ. Լ. Հակոբյանը, «Սովետական գրականություն» ամսագրի գլխավոր խմբագիր ընկ. Հ. Կ. Հովհաննիսյանը, Հայաստանի կոմկուսի Մեղրու շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ե. Վարդանյանը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս քարտուղար ընկ. Գ. Ա. Գալոյանը, «Ռյա թազա» թերթի խմբագիր ընկ. Մ. Ա. Մստոյանը, ընկ. Մ. Պ. Կոլեսնիկովը, Երևանի պետական համալսարանի կուսակցական կոմիտեի քարտուղար ընկ. Ռ. Վ. Ենգիբարյանը:

Քննարկված հարցի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժնի սեկտորի վարիչ ընկ. Վ. Պ. Պոլյանիչկոն, ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժնի հրահանգիչ ընկ. Վ. Մ. Յաշինը:

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*Ընկերնե՛ր:*

*Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը մեր կուսակցությունը դիտում է որպես իր գործունեության կարևորագույն ուղղություն: Կուսակցությունը միշտ ելել ու ելնում է այն բանից, որ նոր մարդու ձևավորումը ոչ միայն ծրագրային նպատակ է, այլև կոմունիստական շինարարության, մեր առաջընթացի պարտադիր պայման:*

*Հասարակության հեղափոխական վերակերտման դարաշրջանը, որի ըսկիզբը դրեց մեծ Հոկտեմբերի հաղթանակը, նաև նոր մարդու ձևավորման ժամանակն է: Հենց նոր հասարակության կառուցման պրոցեսում է առնականացել ու կոփվել հայրենասեր ու ինտերնացիոնալիստ, կոմունիստական իդեալների հաղթանակի համար պայքարող համոզված մարտիկ, մեր հայրենիքի նյութական ու հոգևոր բոլոր հարստությունների ստեղծող սովետական մարդը: Եվ ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, մենք բոլոր հիմքերն ունենք համարելու, որ նոր մարդը ոչ միայն հեռավոր իդեալ է, այլև մեր օրերի իրողություն:*

*Սովետական Հայաստանի բոլոր նվաճումները, այն ամենը, ինչով մենք այսօր իրավամբ հպարտանում ենք, արգասիքն են հանրապետության աշխատավորների բոլոր սերունդների պատմական արարման, սերունդներ, որոնց կոմունիստական կուսակցությունը դաստիարակել է բարձր գաղափարայնության և սոցիալիստական հայրենիքին, անմահ Լենինի, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով: Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում իրենց առաքելության խոր գիտակցումով նրանք մաքառել են հանուն մեծ նպատակի իրագործման, իրենց երկիրը դարձնելով բարգավաճող, բարձր զարգացած հանրապետություն, արժանի ավանդ բերելով սովետների երկրի տընտեսական ու հոգևոր պոտենցիալի բազմապատկման գործին:*

*Կոմունիստների, բոլոր աշխատավորների հայրենասիրական ստեղծագործ աշխատանքի, արտադրական ու քաղաքական բարձր ակտիվության, նրանց կողմից կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների հետևողական կենսագործման արդյունքն են նաև վերջին ժամանակների մեր նվաճումները, այն, որ կատարվում ու գերակատարվում են տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները, ապահովվում է հանրապետության տնտեսական, սոցիալական և կուլտուրական կայուն, դինամիկ զարգացումը:*

*Այսօր մենք գոհունակությամբ ենք նշում, որ մեր աշխատավորները հաջողությամբ եզրափակեցին նաև անցած տնտեսական տարին, որ ըստ չորս տարվա արդյունքների՝ հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացումն ընթացել է հնգամյակի առաջադրանքներին համապատասխան: Արդյունաբերության մեջ 1984 թվականի պլանային առաջադրանքները գերակատարվել են բոլոր հիմնական ցուցանիշներով: Ապրանքային արտադրանքի արտադրության ծավալների աճի տեմպերը կազմել են 6,8 տոկոս: Ապահովվել է աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս արտապլանային բարձրացման և ինքնարժեքի 0,5 տոկոս լրացուցիչ իջեցման սոցիալիստական*

---

** Տպագրվում է համառոտումներով:*

«Մեր հասարակության առջև ծառացած են որակապես նոր խնդիրներ, որոնք պահանջում են մոբիլիզացնել ժողովրդի ամբողջ ստեղծագործական պոտենցիալը, որոշակիորեն վերակողմնորոշել հասարակական գիտակցությունը։ Եվ այստեղ բացառիկորեն մեծ է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի նշանակությունը։ Այն միլիոնավոր սովետական մարդկանց անձնվեր պայքարի է հանում հանուն արտադրության ինտենսիֆացման և գիտատեխնիկական առաջադիմության արագացման, հանուն նյութական ռեսուրսների տնտեսման և բարձր արտադրողականության յուրաքանչյուր աշխատատեղում»։

Մեր գլխավոր խնդիրն է՝ լիապես օգտագործել մեր գաղափարախոսության ակտիվ, վերակերտիչ ուժը տնտեսական և սոցիալական հրատապ պրոբլեմների լուծման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների իրականացումը բազմապլան խնդիր է, որն ընդգրկում է մեր կենսագործունեության բոլոր ոլորտները և առաջին հերթին պահանջում է հետևողական կազմակերպչական աշխատանք, կոնկրետություն, ձեռներեցություն, նորարարություն, դաստիարակության հարցերի նկատմամբ սիստեմային և կոմպլեքսային մոտեցում։

Բայց մենք, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, պետք է խոստովանել, առայժմ դանդաղ ենք կատարելագործում աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումների լույսի ներքո։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների կողմից անհրաժեշտ վերահսկողություն չիրականացնելու հետևանքով որոշ կուսակցական կոմիտեներ և կազմակերպություններ պլենումի որոշումների կատարմանը մոտեցել են իբրև կամպանիայի, մշակված միջոցառումները չեն ամրապնդել կազմակերպչական ակտիվ աշխատանքով։ Նրանցից շատերը գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում դանդաղ են ազատվում շաբլոնից, առաջվա նման դրանում չկա կոնկրետություն, նկատվում են ձևամոլություն, կտրվածություն գործնական խնդիրներից, սոցիալ-տնտեսական ռեալ պրոցեսներից, չեն հաղթահարվել անհետևողականությունը, կիսատ-պռատ ձեռնարկումներով բավարարվելու վնասակար հոգեբանությունը։

Գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքը դեռևս ամենուրեք չէ, որ ամրապնդվում է տնտեսական, սոցիալական և կազմակերպական կարգի միջոցառումներով, տնտեսական կադրերը միշտ չէ, որ հաշվի են առնում ընդունվող որոշումների դաստիարակչական հետևանքները։ Մի շարք կուսակցական կոմիտեներ ղեկավար կադրերին թույլ են ներգրավում քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մեջ, նրանցից ինչպես հարկն է հաշիվ չեն պահանջում սոցիալ-կենցաղային հարցերը ժամանակին չլուծելու համար։

Դրանով նաև կարելի է բացատրել այն, որ մեզանում դեռևս առկա են ետ մնացող ձեռնարկություններ, տնտեսություններ, կազմակերպություններ, անտնտեսվարության, անբարեխիղճ աշխատանքի, պետական, պլանային, արտադրական և աշխատանքային ցածր կարգապահության փաստեր, աշխատաժամանակի կորուստներ, թերություններ, որոնք մատնացույց են արված Կենտկոմի որոշման մեջ։

Յուրաքանչյուր կուսակցական կոմիտե, յուրաքանչյուր կազմակերպություն իր աշխատանքում անշեղորեն պետք է առաջնորդվի պլենումի այն հիմնարար դրույթով, որ վերստին ընդգծված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ՝ ուժեղացնել գաղափարախոսական ազդեցությունը հասարակության կյանքի բոլոր ոլորտների և, առաջին հերթին, ժողովրդատնտեսական, սոցիալական արմատական խնդիրների լուծման վրա։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները, ամրապնդելով և զարգացնելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների իրագործման աշխատանքի դրական միտումները, պետք է ավելի ակտիվորեն և նպատակասլաց վարեն իրենց գաղափարախոսական դաստիարակչական գոր-



ծունեությունը, ավելի հաստատակամորեն աշխատավորության մեջ ձևավորեն կոմունիստական գաղափարայնություն, այնպիսի կարևոր հատկություններ, ինչպիսիք են հայրենասիրությունը, ինտերնացիոնալիզմը, քաղաքացիական պարտքի խոր զգացումը, բարձր բարոյականությունը, գիտակցական կարգապահությունը, բարեխիղճ վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։

Մենք պետք է ակտիվացնենք աշխատանքը՝ ուղղված աշխատավորական կոլեկտիվներում կազմակերպվածությունն ու կարգուկանոնը ամրապնդելու նպատակին, հասնենք այն բանին, որ կոլեկտիվներից յուրաքանչյուրում հաստատվի համերաշխ, բարձրարտադրողական աշխատանքի, ստեղծագործական որոնման մթնոլորտ։

Յուրաքանչյուր կուսակցական կոմիտե և սկզբնական կուսկազմակերպություն պետք է պայքարեն պետական, պլանային և աշխատանքային կարգապահությունը ամրապնդելու համար։

Անթույլատրելի է, որ ամեն տարի արդյունաբերության մեջ ձեռնարկությունների ու կազմակերպությունների մոտ 6—7 տոկոսը չի կատարում արտադրանքի թողարկման և իրացման, իսկ ավելի մեծ թվով ձեռնարկություններ ու կազմակերպություններ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքները, որ հանրապետության ձեռնարկությունների մոտ 20 տոկոսը ոչ լրիվ է կատարում մատակարարումների իր պայմանագրային պարտավորությունները։

Աշխատավորական շատ կոլեկտիվներում աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման խնդրին, ուղղակի ասենք, մոտեցել են որպես փութանցիկ կամպանիայի, մինչդեռ բացակայությունների, շուրջօրյա և ներհերթափոխային պարապուրդների, ադմինիստրացիայի թույլտվությամբ գործի չներկայանալու պատճառով աշխատաժամանակի կորուստները դեռևս բարձր են։

Աշխատանքի կարգապահության վիճակի համար ձեռնարկության ադմինիստրացիայի հետ մեկտեղ պատասխան պիտի տան նաև կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, որոնք պարտավոր են ըստ ամենայնի ուժեղացնել հենց աշխատավորական կոլեկտիվի դաստիարակչական դերը, նրանում առողջ հասարակական կարծիք ստեղծել կարգազանցների դեմ, անզիջում պայքարել ոչ միայն կարգապահությունը խախտողների, այլև նրանց դեմ, ում թողտվության պայմաններում տեղ են գտնում նման երևույթներ։

Անհրաժեշտ է կազմակերպական, տեխնիկական և տնտեսական միջոցներ ձեռնարկել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, յուրաքանչյուր աշխատատեղում բարձրարտադրողական և բարձրորակ աշխատանքի պայմաններ ստեղծելու համար, հոգ տանել արտադրության կուլտուրայի մշտական բարձրացման, բոլոր աշխատողների հանգստի կազմակերպման մասին։

Այս ամենը կնպաստի աշխատանքային լավ տրամադրության ստեղծմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը։

Արտադրանքի ծավալների մեծացման չօգտագործված խոշոր հնարավորություններ և ռեզերվներ կան ագրոարդյունաբերական համալիրում։

Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների ստեղծումը նպաստավոր ազդեցություն ունեցավ գյուղատնտեսության և ագրոարդյունաբերական համալիրի մյուս ճյուղերի փոխհարաբերությունների վրա։ Բայց և, դրա հետ մեկտեղ, գյուղում կառավարման նոր մարմինների գործունեության վերակառուցումը առայժմ դանդաղ է ընթանում։ Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդները լիապես չեն օգտագործում իրենց տրված իրավունքները, չի երևում նրանց դերը սոցիալական և դաստիարակչական խնդիրների լուծման գործում։ Ամենուրեք չէ, որ ապահովվում է կոմպլեքսային մոտեցումը գյուղում ծագող պրոբլեմների լուծման, գյուղատնտեսական աշխատանքի բովանդակության հարստացման, դրա հեղինակության բարձրացման հարցերում։

Մեզանում այնքան էլ բարվոք չէ նոր տեխնիկայի, առաջադիմական տեխ-

նոլոգիայի և առաջավոր փորձի արմատավորման առաջադրանքների կատարման վիճակը։ Ժողովրդական տնտեսության ճյուղերի մեծ մասում դրանց հետ կապված միջոցառումները իրականացվում են ոչ լրիվ։

Լուծելու շատ հարցեր կան նաև շինարարության մեջ։ Լավ է, որ ամեն տարի կատարվում են շինարարական աշխատանքների պլանները գլխավոր կապալառուի գծով և, ինչպես ասացինք, վերջին երկու տարիներին իրացվում են սոցիալ-կուլտուրական նշանակության օբյեկտների գործարկման առաջադրանքները։ Սակայն հանրապետությունում, ամբողջությամբ վերցված, չեն կատարվում շինմոնտաժային աշխատանքների պլանները, լրիվ չեն իրացվում պետական կապիտալ ներդրումների լիմիտները։

Դեռևս քիչ չեն չլուծված հարցերը կոմունալ տնտեսության մեջ, մարդատար տրանսպորտի, սպասարկման ոլորտի աշխատանքում։ Իսկ չէ՞ որ դրանք մեր մարդկանց հրատապ պահանջմունքների բավարարման հարցերն են, այն հարցերը, որոնց լուծումը մեծ սոցիալ-հոգեբանական նշանակություն ունի։

Անշեղորեն կատարել բնակարանների, սոցիալ-կուլտուրական օբյեկտների կառուցման նախատեսված պլանները, բարելավել առևտրի ու հասարակական սննդի, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատանքը, հստակորեն կարգավորել մարդատար տրանսպորտի, կոմունալ տնտեսության, առողջապահության օբյեկտների, բոլոր այն օբյեկտների ու կազմակերպությունների աշխատանքը, որոնք առնչություն ունեն մեր մարդկանց գործունեության, կյանքի ու կենցաղի կազմակերպման հետ. այս ամենը օրենք պետք է դառնա յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի ու կազմակերպության, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական մարմինների ու կազմակերպությունների, ամենքիս համար։ Հոգ տանելով ժողովրդատնտեսական պլանների գաղափարախոսական ապահովման մասին, մենք պարտավոր ենք, ինչպես պահանջում է կուսակցությունը, միաժամանակ հոգալ նաև քաղաքական աշխատանքի, դաստիարակչական ջանքերի սոցիալ-տնտեսական ապահովման մասին։

Անհրաժեշտ է եռանդուն միջոցներ ձեռնարկել թերությունները վերացնելու համար, անել ամեն հնարավորը ետ մնացող տեղամասերում վիճակը շտկելու, ժողովրդական տնտեսության զարգացման գործում եղած դրականը ամրապնդելու և բազմապատկելու, 11-րդ հնգամյակի առաջադրանքները ամբողջությամբ կատարելու համար։

Հարկավոր է դրան ուղղել սոցիալիստական մրցությունը, որի գլխավոր նպատակը պետք է դառնա ամբողջ նախատեսվածի լիակատար իրականացումը, աշխատանքի հստակ ռիթմի, արտադրության արդյունավետության բարձրացման ապահովումը, բարձրորակ արտադրանքի թողարկման, նոր տեխնիկայի արմատավորման պլանների, պայմանագրային պարտավորությունների ժամանակին և լրիվ կատարումը, աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեի, յուրաքանչյուր տոննա հումքի, յուրաքանչյուր ռուբլու, յուրաքանչյուր կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի ռացիոնալ օգտագործումը։ Ամենուրեք պետք է ծավալվի տարեկան երկու օր տնտեսված նյութերով, հումքով ու վառելիքով աշխատելու շարժումը։

Նախանշված պլանների կատարման համար ակտիվ կազմակերպչական, քաղաքական աշխատանք իրականացնելու հետ միաժամանակ մենք պարտավոր ենք մշտապես հոգալ հանրապետության էկոնոմիկայի վաղվա օրվա մասին, ռեալիզմն ու նորարարությունը զուգորդելով՝ համառորեն աշխատել, որ այն բարձրացվի որակապես նոր մակարդակի, վճռական տեղաշարժի հասնել աշխատավորության բարեկեցության աճի հուսալի նյութական բազայի՝ հանրային արտադրության ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում։

Կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է իրենց գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեությունը դարձնել ավելի առարկայական, ավելի նպատակասլաց, այն իրականացնել այնպես, որ է՛լ ավելի սերտորեն շաղկապվի սոցիալ-տնտեսական հարցերի



լուծմանը, մեր ամբողջ տնտեսական շինարարությանը, մշտապես հիշելով, որ մեր առաջընթացի տեմպերը մեծապես կախված են այն բանից, թե մենք ինչպես կկարողանանք մոբիլիզացնել մասսաների հոգևոր եռանդը, խրախուսել նրանց աշխատանքային և սոցիալական ակտիվությունը։

Գաղափարախոսական նախադրյալներ ստեղծելով տնտեսական աճի համար, հանրապետական կուսակցական կազմակերպությունը հետևողականորեն ջանում է, որպեսզի գաղափարադաստիարակչական պրոբլեմների լուծումը խարսխվի մշտապես ամրապնդվող ու զարգացող սոցիալ-տնտեսական հիմքի վրա, քանզի պրոպագանդայի և ագիտացիայի ներգործունության արդյունավետությունը, դաստիարակչական աշխատանքի կայուն արդյունքների ձեռքբերումը զգալիորեն կախված են սոցիալական իրադրությունից, մարդկանց նորմալ կենսագործունեությանը և լավ տրամադրությանը օժանդակող պայմաններից։

Գաղափարախոսական աշխատանքի սոցիալական ու նյութական բազան այսուհետև ևս զարգացնելու և ամրապնդելու համար դեռ պիտի լուծվեն ոչ քիչ պրոբլեմներ, վերացվեն ոչ քիչ թերություններ։

Այդ թվում այսօր էլ դեռ հրատապ է բնակչության աշխատանքային զբաղվածության պրոբլեմը։

Հանրային արտադրության մեջ մարդկանց ներգրավումը սոցիալ-տնտեսական լուրջ պրոբլեմ է։

Ինչպես ձեզ հայտնի է, վերջին ժամանակներս հանրապետությունում հետևողականորեն իրականացվում են բնակչության աշխատանքային զբաղվածության առավել լրիվ ապահովման միջոցառումներ։ Շրջկենտրոններում, ավաններում ու խոշոր գյուղերում ստեղծվում են արդյունաբերական ձեռնարկություններ, արդեն գործող միավորումների ու ձեռնարկությունների մասնաճյուղեր։ Արագ կերպով զարգացել են աշխատատար ճյուղերը, որ հնարավորություն է տվել կարճ ժամանակամիջոցում ստեղծել մեծ քանակությամբ լրացուցիչ աշխատատեղեր։ Մենք այսուհետև ևս այդ աշխատանքը կվարենք եռանդուն և նպատակասլաց։ Մանավանդ որ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ համապատասխան միութենական մարմիններին հանձնարարված է 1986—1990 թվականների և հեռանկարային պլանների նախագծերում նախատեսել հանրապետության արդյունաբերության աշխատատար ճյուղերի առավել արագ զարգացում։ Հարկ է ընդգծել, որ տվյալ դեպքում աշխատատար ճյուղեր ասելով մենք նկատի ունենք այն ճյուղերը, որոնց զարգացումը հնարավորություն է ընձեռում առավել շատ աշխատատեղեր ստեղծել։

Մենք պետք է գործուն միջոցներ ձեռնարկենք այսպես կոչված տարագնացությունը կրճատելու նպատակով։ Աշխատանք տանելով տարագնացության կրճատման, կանխման ուղղությամբ, հարկավոր է միաժամանակ միջոցներ ձեռնարկել այդ պրոցեսը բանվորների կազմակերպված հավաքագրման հունի մեջ դնելու, այն կառավարելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ հանրապետությունում ընդլայնվում և խորանում են կուսակցական կոմիտեների կապերը մասսաների հետ։ Գաղափարադաստիարակչական աշխատանքը ավելի ու ավելի է կենտրոնացվում աշխատավորական կոլեկտիվներում։ Քաղաքական դաստիարակության, ժողովրդատնտեսական պլանների գաղափարախոսական ապահովման դրական փորձ են կուտակել շատ ձեռնարկությունների, հիմնարկների կուսակցական կազմակերպությունները։

Սակայն վիճակն ամենուրեք չէ, որ բարվոք է։ Որոշ տեղերում այն հիմնադրույթը, թե աշխատավորական կոլեկտիվը պետք է դառնա քաղաքական-դաստիարակչական աշխատանքի իսկական կենտրոն, առայժմ մնում է զուտ որպես կոչ։ Միշտ չէ, որ ինչպես հարկն է հոգ են տանում կուսակցական և հասարակական կազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, մարդկանց նկատմամբ տարբերակված մոտեցում հանդես բերելու, նրանց հետ անհատապես աշխատելու, ստորին օղակի ակտիվի ուսուցումը բարելավելու

համոզմունքներ, որ մատերիալիստական աշխարհայացքի սկզբունքները հաստատվեն նրանց գիտակցության մեջ, կողմնորոշիչներ դառնան աշխատանքային գործունեության մեջ և հասարակական կյանքում։

Իրենց գործունեությունը վերակառուցելով հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո, հանրապետության կուսակցական կազմակերպությունները հետևողական աշխատանք են տանում մեր մարդկանց մեջ մարքս-լենինյան աշխարհայացք ձևավորելու նպատակով։ Այս առումով վերջին ժամանակներս հետաքրքրական և ուսանելի քիչ բան չի ի հայտ եկել Երևանի, Լենինականի, Կիրովականի, Հրազդանի, Սիսիանի, Ախուրյանի, Էջմիածնի, Ղափանի և մի շարք այլ շրջանների կուսկազմակերպություններում։

Ավելի նպատակասլաց ու հրատապ է դառնում կուսակցական ուսուցման, մասսայական-քաղաքական ու տնտեսագիտական կրթության բովանդակությունը։ Մեծ ուշադրություն է նվիրվում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, կուսակցության համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների ու նյութերի, կուսակցական կարևորագույն փաստաթղթերի, զարգացած սոցիալիզմի կատարելագործման տեսության ու պրակտիկայի պրոբլեմների, ՍՄԿԿ սոցիալական և տնտեսական քաղաքականության, սոցիալիստական ապրելակերպի, ազգային հարաբերությունների և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման հարցերի, ինչպես նաև միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի և հակապրոպագանդայի ուժեղացման հարցերի ուսումնասիրմանը։

Քաղաքական ուսուցումը նպատակամղվում է այն բանին, որ յուրաքանչյուրն ըմբռնի կուսակցության քաղաքականությունը և գործնականորեն կատարի իր հասարակական պարտքը։ Կուսակցական կոմիտեներն սկսել են ավելի լայնորեն արմատավորել պարապմունքների ակտիվ ձևերը, դրանց հաղորդելով գործնական ուղղվածություն։

Բայց հարկ է ասել, որ այդ աշխատանքում դեռևս քիչ չեն թերությունները, և դրանցից գլխավորը դանդաղկոտությունն է այդ աշխատանքի կատարելագործման հարցում, երկչոտությունը նոր, գործուն ձևեր ու մեթոդներ արմատավորելիս, սպասողական կեցվածք ընդունելը, մինչև որ մի բան ասեն կամ հուշեն վերևից։

Վերջերս ՀԿԿ Կենտկոմը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքը Երևանի Սովետական շրջանի կուսակցական կազմակերպություններում։ Պարզվեց, որ կատարված դրական աշխատանքի հետ մեկտեղ՝ հատկապես ըստ բնակության վայրի, մի շարք կուսկազմակերպություններ մասսայական քաղաքական աշխատանքը, մասնավորապես՝ քաղաքական լուսավորության աշխատանքը, տանում են հին ձևով, ձևական մոտեցում են հանդես բերում գործի նկատմամբ, առանձին պրոպագանդիստներ ու ագիտատորներ լուրջ չեն վերաբերվում իրենց պարտականությունների կատարմանը։

Նույնպիսի բացեր, ցավոք, կան նաև մի շարք այլ շրջաններում։ Որոշ կուսկազմակերպությունների պրակտիկայից դեռևս լիովին արմատախիլ չեն արվել ճոռոմաբանությունը, ձևամոլությունը, հմտորեն չի օգտագործվում կուսակցական պրոպագանդայի գաղափարական ու կազմակերպող պոտենցիալը։

Բնականաբար, որքան արագ վերացվեն այդ թերությունները, գաղափարախոսական աշխատանքի ձևերն ու մեթոդները որքան շուտ համապատասխանեցվեն լուծվող խնդիրների նորարարական բնույթին, այնքան հաջողությամբ կկենսագործվեն ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները։

Մեր գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքն իր գաղափարատեսական մակարդակով պետք է համապատասխանի ժամանակի ամենաբարձր պահանջներին, միշտ սրտամոտ ու հասկանալի լինի մարդկանց։ Այդ աշխատանքը կազմակերպելիս մենք պետք է հմտորեն օգտագործենք կոմունիստական դաստիարակության ձևերի ու մեթոդների հարստագույն զինանոցը, բարելավենք կուսակցական ու տնտեսագիտական ուսուցումը, բարձրացնենք բանավոր ու դիտողական ագիտացիայի բովանդակալիությունը, կոնկրետությունն ու ներգործունությունը։



Բանավոր պրոպագանդայում, ինչպես հայտնի է, կարևոր տեղ է պատկանում դասախոսական աշխատանքին։ Հանրապետությունում այն իրականացվում է գիտական և պլանային ամուր հիմքի վրա, կոմպլեքսայնորեն, հաշվի առնելով տարբեր լսարանների առանձնահատկությունները։ Հավանության է արժանի աշխատավորական կոլեկտիվներում տարվող դասախոսական-պրոպագանդիստական աշխատանքի մեջ հանրապետության գիտնականների ներգրավումը։

Բայց, պետք է ասել, որ դեռևս ամենուրեք չէ, որ պատշաճ ուշադրություն են դարձնում դասախոսական պրոպագանդայի մակարդակին, ապահովում այդ կարևոր գործի պատշաճ կուսակցական ղեկավարումը։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների գաղափարադաստիարակչական աշխատանքի պրակտիկայում ամուր հաստատվել են միասնական քաղօրերը։ Յուրաքանչյուր քաղօրի ընթացքում աշխատավորների հետ հանդիպումներ են ունենում երկու հազարից ավելի ղեկավար աշխատողներ, կուսակցական կոմիտեների դասախոսներ ու զեկուցողներ։ Քաղօրերի ընթացքում առաջադրված մեծաթիվ հարցերն ու առաջարկությունները վերլուծվում են, դրանց առթիվ ձեռնարկվում են համապատասխան միջոցներ, որոնց մասին այնուհետև տեղյակ են պահվում աշխատավորները։

Օգտագործելով կուտակված դրական փորձը, իսկ այդպիսին արդեն կա, անհրաժեշտ է բարձրացնել միասնական քաղօրերի անցկացման արդյունավետությունը։ Հարկ է ընդլայնել զեկուցողների կազմը, ապահովել բոլոր ղեկավարների սիստեմատիկ ելույթները աշխատավորների առջև, բոլոր կուսակցական կոմիտեներում կազմակերպել հարցերի և առաջարկությունների օպերատիվ հաշվառումը և դրանց ընթացք տալը։ Մասսաների հետ կապի այս ձևին մենք մեծ նշանակություն ենք տալիս, և կուսակցական կազմակերպությունները պետք է խստապահանջ լինեն այն ընկերների նկատմամբ, ովքեր խուսափում են այդ գործին ակտիվորեն մասնակցելուց։

Տնտեսական և դաստիարակչական խնդիրների լուծման գործում մենք պետք է առավել նպատակասլաց օգտագործենք դիտողական ագիտացիայի հնարավորությունները։ Այն հարկ է լրջորեն կատարելագործել, առավել կապել կյանքի, աշխատավորական կոլեկտիվների առաջադրված գործնական խնդիրների հետ։ Կուսակցական կոմիտեները պետք է խստապահանջ լինեն այս հարցում, կարգավորեն դիտողական ագիտացիայի հանձնաժողովների աշխատանքը, դրանցում լայնորեն ընդգրկելով մեր գաղափարախոսներին, կերպարվեստագետներին, ճարտարապետներին, գիտնականներին։ Մի՞թե նորմալ կարելի է համարել, որ կուլտուրայի մինիստրության համակարգում չկա դիտողական ագիտացիայի գեղարվեստական ձևավորման որևէ ստորաբաժանում։

Հաջողությունը գաղափարախոսության ոլորտում, ավելի, քան կենսագործունեության որևէ այլ բնագավառում, կախված է կադրերից, քանի որ դա մտքի, գործողության, դաստիարակության ոլորտն է, մի ոլորտ, որտեղ գլխավոր զենքը համոզիչ խոսքն է, ճշմարտության խոսքը, սրտի խոսքը։

Ահա թե ինչու կուսակցական կոմիտեները պետք է մշտական հոգատարություն հանդես բերեն գաղափարախոսական և, մասնավորապես, պրոպագանդիստական կադրերի նկատմամբ։ Պետք է ասել, որ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո որոշակի քայլեր արվել են այդ ուղղությամբ և հատկապես կոմերիտական քաղլուսավորության համակարգում։ Այստեղ, ինչպես և տնտեսագիտական կրթության պրոպագանդիստների կազմում ամրապնդվել է կուսակցական միջուկը։ Կոմերիտական քաղլուսցանցի պրոպագանդիստների ընդհանուր թվում կոմունիստների տոկոսը 50-ից հասցվել է 80-ի, իսկ տնտեսագիտական կրթության սիստեմում՝ 27-ից 50-ի։ Զգալի տեղաշարժ է կատարվել պրոպագանդիստական աշխատանքում կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական ազատված աշխատողների, մարքսիզմ-լենինիզմի համալսարանն ավարտած, գիտական աստիճաններ ու կոչումներ ունեցող անձանց ներգրավման ուղղությամբ։ Ավելի քան հազար մարդով ավելացել

է ձեռնարկությունների և հիմնարկների ղեկավար աշխատող-պրոպագանդիստների թիվը։

Բայց սրանով, իհարկե, չի կարելի բավարարվել։ Հարկավոր է այսուհետև էլ բարելավել պրոպագանդիստների, ինչպես նաև քաղինֆորմատորների, ագիտատորների որակական կազմը, ագիտացիոն աշխատանքում ավելի մեծ չափով ներգրավելով առաջավոր բանվորներին, վարպետներին, բրիգադավարներին։

Պետք է բարձրացնել նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանի աշխատանքի արդյունավետությունը։ Քաղկոմներն ու շրջկոմները պետք է ուսման ուղարկեն արժանավոր ընկերների և ուսումնառության ընթացքում նրանց պահեն իրենց տեսադաշտում։ Այդ կարևոր կուսակցական ուսումնական հաստատության մակարդակը բարձրացնելու համար հարկավոր է դասախոսական աշխատանքի մեջ ավելի ակտիվորեն ներգրավել կուսակցական, սովետական աշխատողների։

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է հետևեն, որպեսզի կոմունիստները մշտապես լավատեղյակ լինեն մեր կուսակցության խոսքին, նրա տեսական գործունեությանը, ներքին և արտաքին քաղաքականության հարցերին։ Դրանում դժվար է գերագնահատել կուսակցական հրատարակությունների դերը։ Պետք է ըստ ամենայնի բարելավել կուսակցական թերթերի և ամսագրերի բաժանորդագրության գործը կոմունիստների շրջանում, ինչպես և ավելի արդյունավետ օգտագործել քաղլուսկաբինետներում և գրադարաններում ստացվող հարուստ գրականությունն ու մամուլը։

Հարկ է նաև ակտիվացնել կուսակցության քաղկոմ-շրջկոմների քաղլուսկաբինետների գործունեությունը, ընդլայնել սկզբնական կուսկազմակերպություններում հասարակական հիմունքներով աշխատող քաղլուսկաբինետների ցանցը, ընդհուպ զբաղվել դրանց նյութատեխնիկական բազայի ամրապնդմամբ։

Սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ եղբայրական բարեկամության ոգով աշխատավորների դաստիարակության հարցը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, կենտրոնական տեղերից մեկն է գրավում մեր գաղափարաքաղաքական գործունեության մեջ։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ հանրապետությունում ավելի բովանդակալից է դառնում ինտերնացիոնալ դաստիարակության, ՍՍՀՄ-ի, սոցիալիստական Հայաստանի պատմական նվաճումների պրոպագանդման աշխատանքը։

Այս բնագավառում աշխատանքի մեր կուտակած փորձը մշտապես հարստանում է նոր գործերով, ձեռնարկումներով։ Է՜լ ավելի են խորանում և ընդլայնվում Սովետական Հայաստանի կապերը բոլոր եղբայրական հանրապետությունների հետ, ընդգրկելով քաղաքական, տնտեսական, մշակութային կյանքի բոլոր կողմերը։

Աշխատավորության, երիտասարդության ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական դաստիարակության գործին նոր թափ է հաղորդել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի տոնակատարության համաժողովրդական նախապատրաստությունը։ Հնգամյակը մինչև հաղթանակի հոբելյանն ավարտելու հայրենասիրական նախաձեռնությամբ հանդես եկան Երևան, Կիրովական քաղաքների, Ախուրյանի, Ապարանի և ուրիշ շրջանների առաջավոր կոլեկտիվները։ Այդ արժեքավոր նախաձեռնությանը պետք է մասսայական բնույթ հաղորդել։ Մենք պետք է ավելի ակտիվորեն օգտագործենք ինչպես մեծ հաղթանակի 40-ամյակի, այնպես էլ ստախանովյան շարժման 50-ամյա հոբելյանի դաստիարակչական հնարավորությունները, առանձնապես երիտասարդության հետ տարվող աշխատանքում։

Մեզ մոտ վերջին ժամանակներս թերթերի, հանդեսների հրապարակումներում, հեռուստատեսային և ռադիոհաղորդումներում զգալիորեն ընդլայնվել է ինտերնացիոնալ թեմատիկան, ավելացել է ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությանը նվիրված հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն, քրդերեն հրատարա-



կությունների ծավալը։ Ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության պրոբլեմների, ազգային հարաբերությունների հարցերին ավելի ու ավելի մեծ տեղ է հատկացվում քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգում։

Սովետական մարդկանց ինտերնացիոնալ միասնության զգացման ոգով դաստիարակելու գործում մեծ դեր է խաղում ռուսաց լեզուն, որի ուսուցման համար հանրապետությունում ստեղծված են լավ պայմաններ։ Ուսումնական հաստատություններում ռուսաց լեզվի դասավանդման որակը բարելավելու աշխատանքը անհրաժեշտ է այսուհետև էլ ուժեղացնել, քանի որ որոշ դպրոցների, պրոֆտեխուսումնարանների, առանձին բուհերի շրջանավարտների մի մասի ռուսաց լեզվի գործնական իմացությունը դեռևս չի համապատասխանում արդի բարձր պահանջներին։ Այդ պատճառով հաճախ մեր պատանիները չեն կարողանում ընդունվել զինվորական ուսումնարաններ, երկրի ուրիշ քաղաքների բուհեր։

Աշխատավորության, առանձնապես երիտասարդության, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը, նրանց դաստիարակումը սովետական ժողովուրդների բարեկամության և եղբայրության ոգով, մեր ժողովրդի ճակատագրում Ռուսաստանի, ռուս մեծ ժողովրդի խաղացած պատմական դերի խոր գիտակցման ոգով Հայաստանի կոմկուսը համարում է իր մշտամնա խնդիրը։ Օգտագործելով կուտակած փորձը, մենք այսուհետև էլ կանենք ամեն ինչ այդ աշխատանքի արդյունավետությունը անհատի ձևավորման բոլոր աստիճաններում բարձրացնելու համար, ինչին, անկասկած, ակտիվորեն կնպաստի դպրոցական ռեֆորմի, կոմերիտմիության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման ժամանակին ու լիակատար կենսագործումը։

Ինտերնացիոնալ դաստիարակության գործին ակտիվորեն օգնում է նաև այնպիսի կադրային քաղաքականության վարումը, որը հաշվի է առնում հանրապետության բնակչության ազգային կազմը։ Այդ գործը մենք մշտապես պահում ենք մեր ուշադրության կենտրոնում։ Մեզ մոտ կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական ընտրովի մարմիններում ապահովված է բոլոր ազգությունների համապատասխան ներկայացուցչությունը։ Կուսակցական կոմիտեները պետք է ավելի ակտիվ աշխատանք տանեն նրանց թվից լավագույն կազմակերպիչներին ու մասնագետներին պատասխանատու աշխատանքի պատրաստելու և առաջ քաշելու, առաջավորներին բարոյապես խրախուսելու համար։

Ընկերնե՛ր։ Մենք պետք է հետևողականորեն ուժեղացնենք հակապրոպագանդիստական աշխատանքը, կատարելագործենք դրա ձևերն ու մեթոդները։ Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքը պետք է ուղղված լինի իմպերիալիզմի հետադիմական էության խոր բացահայտմանը, նրա հակաժողովրդական և ագրեսիվ քաղաքականության, բուրժուական գաղափարախոսության ու բարոյախոսության մերկացմանը, սովետական մարդկանց մեջ քաղաքական ճիշտ զգացողության, դասակարգային մոտեցման, հակառակորդի գաղափարական դիվերսիաներին հակահարված տալու կարողության դաստիարակմանը։

Վերջին ժամանակներս մեր հակապրոպագանդան դարձել է ավելի օպերատիվ, մղվում է հարձակողաբար, փաստարկված, հաշվի առնելով հանրապետության առանձնահատուկ պայմանները։

Չնայած դրական տեղաշարժերին, մենք չենք կարող չնշել նաև գաղափարախոսական աշխատանքի այդ տեղամասի թերությունները, վրիպումները։ Շատ պրոբլեմներ և չլուծված հարցեր կան մեր հակապրոպագանդիստական ջանքերի կոորդինացման բնագավառում։ Կարևոր է, որ հակապրոպագանդայի գոյություն ունեցող համակարգը միշտ և բոլոր մակարդակներով գործի արդյունավետ։ Կուսակցական կոմիտեները պետք է օգնեն սկզբնական կուսկազմակերպություններին բարելավելու հակապրոպագանդայի ուղղությամբ աշխատավորական կոլեկտիվներում և երիտասարդության շրջանում տարվող աշխատանքը։ Հարկավոր է հասնել այն բանին, որ հակապրոպագանդան դառ-

նա ամբողջ գաղափարադաստիարակչական, կուլտուր-լուսավորական, ուսումնական և գիտական գործունեության անկապտելի մասը:

Պետք է ավելի լրիվ օգտագործել արտաքին քաղաքական պրոպագանդայի և հակապրոպագանդայի առկա հնարավորությունները:

Ներկայումս իմպերիալիզմի կողմից «հոգեբանական պատերազմի» անզուսպ ուժեղացման պայմաններում, ինչպես երբեք, կարևոր է ապահովել սոցիալիստական գաղափարախոսության հարձակողականությունը:

Մեր գաղափարախոսության հարձակողականությունը, ընդգծված է «Զարգացած սոցիալիզմի կատարելագործումը և կուսակցության գաղափարախոսական աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո» համամիութենական գիտագործնական կոնֆերանսում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ, միայն բուրժուական գաղափարախոսական առասպելների և ստերեոտիպների մերկացումը չէ: Դա ամենից առաջ մեր իդեալների, հասարակական կյանքի սոցիալիստական նորմերի հաստատումն է, իսկական ազատության ու դեմոկրատիայի հաստատումը, իրական սոցիալիզմի պատմական նվաճումների պրոպագանդումը:

Մեր գաղափարախոսության հարձակողականությունը ՍՄԿԿ-ի ու Սովետական պետության, սոցիալիստական ընկերակցության երկրների խաղաղասիրական միջազգային քաղաքականության ամենաակտիվ պրոպագանդումն է:

Մեր գաղափարախոսության հարձակողականությունը ինֆորմացիայի կուսակցական սկզբունքայնությունն ու օպերատիվությունն է: Մենք պետք է ժամանակին և ըստ էության պատասխանենք այն հարցերին, որ առաջադրում են համաշխարհային զարգացումը, երկու հակամարտ սիստեմների պայքարի ու մրցակցության ընթացքը, պետք է ժամանակին, երբ դա պահանջում է կյանքը, այս կամ այն ճշգրտումը մտցնենք մեր պատկերացումների ու պրակտիկայի մեջ:

Հանրապետությունում գաղափարադաստիարակչական գործունեության յուրահատուկ բնագավառ է արտասահմանից հայրենիք վերադարձող հայերի հետ տարվող աշխատանքը: Պատմական նշանակության փաստ է հայրենադարձությունը: Կուսակցության և սովետական պետության հայրական հոգատարության շնորհիվ հայրենադարձությունը շարունակվում է: Հայրենադարձները՝ համակողմանի ուշադրությամբ և հոգատարությամբ շրջապատված, կազմակերպչական և դաստիարակչական մեծ աշխատանքի շնորհիվ ակտիվորեն ներգրավվել են աշխատանքային ու հասարակական կյանքի մեջ: Շատ-շատերը արտադրության առաջավորներ են, վարում են ղեկավար պաշտոններ, ընտրված են կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների կազմում:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական և մյուս կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի կատարելագործեն, բարելավեն հայրենադարձների շրջանում տարվող աշխատանքը, հարստացնեն ու արդիականացնեն դրա բովանդակությունը, ուժեղացնեն ներգործունությունը: Այդ աշխատանքը պետք է աչքի ընկնի հոգատարությամբ, տակտով և նրբանկատությամբ:

Սփյուռքահայության դերակշռող մեծամասնությունը լավ է վերաբերվում Սովետական Հայաստանին, ամբողջ Սովետական Միությանը, Սովետական Հայաստանը համարում բոլոր հայերի հայրենիքը: Բայց մենք երբեք չպետք է մոռանանք, որ հայ գաղութները սոցիալական և քաղաքական տեսակետից միատարր չեն: Այնտեղ կան կոմունիստներ՝ մեր դասակարգային եղբայրները: Կան նաև կուսակցություններ ու հայրենասիրական խմբավորումներ, որոնք հիմնականում կանգնած են հայրենիքի հետ կապերն ամրապնդելու դիրքերում:

Այնտեղ է նաև դաշնակցական կուսակցությունը: Մենք պայքարել ենք և կպայքարենք դաշնակցության հետադիմական, ազգայնամոլական գաղափարախոսության դեմ, մերկացրել ենք և ակտիվորեն կմերկացնենք նրա պարա-



գլուխների արկածախնդրական, հակասովետական գործունեությունը: Կուսակցությունների մասին դատում են ըստ նրանց համագումարների որոշումների, ըստ նրանց գործերի: Դաշնակցությունը եղել ու մնում է հակահեղափոխական, հակասովետական կուսակցություն, որն այսօր ծառայում է ամերիկյան իմպերիալիզմին:

Կարևոր խնդիր է մեր հայրենակիցներին լայնորեն ու հմտորեն տեղեկություններ հասցնել այն վիթխարի նվաճումների մասին, որ Սովետական Հայաստանը ձեռք է բերել Հոկտեմբերի դրոշի ներքո, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում, կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ: Պետք է նաև անհրաժեշտ պրոպագանդիստական նյութերով մշտապես ապահովել հայկական առաջադիմական կազմակերպությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների լույսի ներքո պետք է իր աշխատանքը հետևողականորեն բարելավի Սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեն, ավելի լիովին օգտագործի կապերը արտասահմանի առաջադեմ հայկական կազմակերպությունների հետ՝ սովետական խաղաղասիրական նախաձեռնությունները պարզաբանելու, ռեալ սոցիալիզմի ձեռքբերումները պրոպագանդելու համար:

Այս տեսակետից է՛լ ավելի ակտիվ գործունեություն պիտի ծավալեն արտասահմանյան երկրների հետ մշակութային կապերի հայկական ընկերությունը, արտասահմանյան տուրիզմի գլխավոր վարչությունը: Անհրաժեշտ է առավել լայնորեն օգտագործել այդ նպատակով արտասահմանյան երկրներում կազմակերպվող միջոցառումները, ինչպես նաև համապատասխան աշխատանք տանել արտասահմանից մեր հանրապետություն այցելող հյուրերի հետ:

Մեր պրակտիկայում, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, դեռևս նկատվում են գաղափարադաստիարակչական աշխատանքի այս կամ այն կողմը թերագնահատելու փաստեր: Անթույլատրելի է, երբ որոշ կուսակցական կոմիտեներ բարեհոգաբար են վերաբերվում դաստիարակության գործի վրա բացասաբար անդրադարձող առանձին երևույթներին: Սա վերաբերում է նախ և առաջ աթեիստական աշխատանքին: Վերջին ժամանակներս հանրապետությունում նկատվող պաշտամունքային պրակտիկայի որոշ ակտիվացումը հիմնականում հետևանք է ինքնահանգստացման, այն կեղծ մտայնության, թե դա իբր սոսկ անմեղ տուրք է ավանդույթներին:

Աշխատավորական կոլեկտիվներից շատերում աթեիստական աշխատանքը սահմանափակվում է հիմնականում ընդհանուր բնույթի, սակավադեպ դասախոսություններով, իսկ այնտեղ, ուր դեռ կան հավատացյալներ, նրանց հետ անհատական աշխատանք չի տարվում: Դասախոսական պրոպագանդայում փաստորեն բացակայում է կրոնաբարոյական իդեալի քննադատությունը: Նույնպիսի թերություններով են տառապում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ելույթները գիտական աթեիզմի թեմաներով:

Հանրապետության հրատարակչությունները աթեիզմի պրոբլեմներին նվիրված չափազանց քիչ գրքեր ու գրքույկներ են լույս ընծայում: Գիտական հետազոտությունները չեն ապահովում աթեիզմի իրոք հրատապ տեսական ու գործնական պրոբլեմների մշակումը:

Հանրապետությունում կուտակվել է սոցիալիստական նոր տոնախմբությունների կազմակերպման որոշակի փորձ: Ավանդական են դարձել և կամ դառնում են այնպիսի մասսայական միջոցառումներ, ինչպիսիք են Գիտելիքների օրը Երևանում, «Անխախտ միություն» թատերականացված տոնահանդեսը Լենինականում, Ծաղկի տոնը Կիրովականում, «Աբովյանցյան ձմեռը» և ազգագրական տոնը Գառնիում, ցուցահանդեսները բաց երկնքի տակ, «Ուսանողական գարունը» և, վերջապես, մեր աշխատավորության կողմից ջերմորեն ընդունված «Էրեբունի-Երևան» տոնը:

Սրա հետ մեկտեղ առավել ակտիվացման կարիք է զգում սովետական քաղաքացիական ծեսերի լայն արմատավորման գործը, մի բան, որի վրա կու-

սակցական կոմիտեների ուշադրությունը հրավիրվեց մեր նախորդ պլենումում, ուստի և թույլ տվեք մանրամասն կանգ չառնել դրա վրա։

Հանրապետությունում քիչ չեն ըստ բնակության վայրի տարվող նպատակասլաց դաստիարակչական աշխատանքի օրինակները։ Կուսակցական, սովետական մարմինների հետևողական աշխատանքի, հասարակական կազմակերպությունների ու գերատեսչությունների ջանքերով Երևանի մի շարք շրջաններում, Լենինականում, Կիրովականում, Գորիսում, Ղափանում, Էջմիածնում հասել են հասարակայնության լայն մասնակցությամբ միկրոշրջանների տարածքի, փողոցների, հրապարակների բարեկարգմանն ու կանաչապատմանը, բարենպաստ և առողջ հասարակական միկրոկլիմայի ստեղծմանը, որը նպաստում է սոցիալիստական համակեցության նորմերի հետևողական հաստատմանը, դրանց խախտումների նվազեցմանը։ Ավելի ու ավելի մեծ թվով բնակիչներ են ընդգրկվում քաղաքների ու շրջանների բարեկարգման գարնանային ու աշնանային մասսայական շաբաթօրյակներում, բակերի կանաչապատման, պատշգամբների լավագույն ծաղկաձևավորման մրցույթներում և այլ միջոցառումներում։

Բարելավվում է աշխատավորների ազատ ժամանակի կազմակերպումը կուլտուր-լուսավորական հիմնարկների կողմից։ Բայց այստեղ դեռևս շարունակում են չափից շատ տարվել քանակական ցուցանիշներով, կիրառում են աշխատանքի հնացած ձևեր ու մեթոդներ։ Քիչ են կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի համալսարանները, սիրողական միավորումները, իսկ եղածներից շատերն էլ գործում են ոչ նպատակասլաց։ Թույլ է կուլտուրայի տների և ակումբների նյութատեխնիկական բազան՝ հատկապես գյուղում։ Ամրապնդման կարիք ունի կուլտուր-լուսավորական հիմնարկների և, մասնավորապես, գրադարանների կադրային կազմը։ Հանրապետության կուլտուրայի մինիստրությունը, այն բոլոր գերատեսչությունները ու հիմնարկությունները, որոնք իրենց համակարգում գրադարաններ ունեն, պետք է մշակեն ընթերցողների սպասարկումը, գրքի պրոպագանդումը բարելավելու միջոցառումներ, ձգտելով հասնել գրքաշրջանառության ընդլայնման, այլ կերպ ասած՝ աշխատավորների կյանքում գրքի դերի մեծացման։

Հանրապետությունում հետագա զարգացում է ստացել մասսայական ֆիզիկական կուլտուրան, ակտիվորեն արմատավորվում են նրա կազմակերպման այնպիսի ձևեր, ինչպիսիք են «Ամբողջ բրիգադով՝ ստադիոն», «Ամբողջ ընտանիքով՝ մեկնարկի», վազքասերների, դահուկավազքի, հեծանվասպորտի երկրպագուների ակումբները։ Տարածում է ստանում շենքերի նկուղները և ազատվող այլ կառույցվածքներ մարզական ակումբների վերածելու Կիրովականի, մանկապարտեզներում ֆիզկուլտուրային և սպորտային աշխատանքի կազմակերպման Լենինականի, պարզագույն տեսակի մարզահրապարակներ ստեղծելու Երևանի և Զարենցավանի փորձը։

Միևնույն ժամանակ ֆիզկուլտուրային-մարզական աշխատանքում կան էական թերություններ ու չօգտագործված մեծ հնարավորություններ։ Բնակչության մի նշանակալի մասը դեռևս դուրս է մնում ֆիզիկական կուլտուրայով սիստեմատիկ պարապելու ոլորտից։ Շատ կոլեկտիվներում չկան ֆիզկուլտուրային կազմակերպություններ։ Դպրոցների շրջանավարտների մոտ 70 տոկոսը չի հանձնում ՊԱՊ-ի նորմանները։

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննարկեց հանրապետության գյուղական շրջաններում ֆիզկուլտուրային և սպորտային աշխատանքի վիճակը։ Պարզվեց, որ հանրապետական սպորտկոմիտեն, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մի շարք շրջանային կազմակերպություններ ձևական մոտեցում են ցուցաբերում գյուղում ֆիզկուլտուրային մասսայական շարժման զարգացման գործին։

Հանրապետությունում մեծ աշխատանք է տարվում բարոյական դաստիարակության ուղղությամբ և հետևողական պայքար մղվում բացասական երևույթների դեմ։ Սակայն այդ աշխատանքն ու այդ պայքարը պատշաճ մակարդակով և վճռականորեն ծավալվում են ոչ ամենուրեք, ոչ բոլոր կուսակ-



ցական կոմիտեների ու կազմակերպությունների կողմից։ Դրա հետևանքով դեռևս հաղթահարված չեն ռեցիդիվիստական սեփականության հափշտակման, կաշառակերության, պրոտեկցիոնիզմի, շորթման փաստերը և այլ մերժելի դրսևորումներ, մի բան, որ բացասաբար է անդրադառնում դաստիարակչական աշխատանքի վրա։

Առևտրի, կենցաղսպասարկման ձեռնարկություններում, առողջապահության ոլորտում և այլուր չեն կրճատվում մատուցած ծառայությունների դիմաց դրամ և ուրիշ արժեքներ շորթելու փաստերը։ Սակայն այդ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները, իրավապահպան մարմինները թույլ են զբաղվում նման հանցագործությունների կանխմամբ։

Դեռևս լիովին արմատախիլ չեն արվել հավելագրումները, պետական հաշվետվությունների աղավաղումները, որոնք ոչ միայն տնտեսական, այլև բարոյական մեծ վնաս են պատճառում։ Համապատասխան վերադաս կազմակերպությունները միշտ չէ, որ սկզբունքային գնահատական են տալիս այդ փաստերին, լիբերալիզմ են հանդես բերում աչքակապություն թույլ տվող անձանց նկատմամբ։ Կան դեպքեր, երբ հավելագրումների և հաշվետվությունների աղավաղման համար մեղավորները խստագույնս չեն պատժվում։ Պատճառած վնասները հաճախ հատուցվում են պետության հաշվին։

Հանրապետության կուսակցական, սովետական, իրավապահպան մարմինները պետք է ուշադրություն նվիրեն պորտաբուծության դեմ պայքարի ուժեղացմանը։ Բարեհոգություն է հանդես բերվում նաև հարբեցողության դեմ պայքարում։ Բավարար ուշադրություն չի նվիրվում ըստ բնակության վայրի կանխարգելիչ աշխատանքի կազմակերպմանը։

Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների կողմից տարբեր մակարդակի կադրերի, այդ թվում և ղեկավար կադրերի, գործունեության թույլ վերահսկողության, քաղաքական և բարոյական դաստիարակության գործում եղած լուրջ թերությունների հետևանքով նրանցից ոմանք վարակվում են սպառողական հոգեբանությամբ, խախտում կոմունիստական բարոյականության նորմերը, թույլ տալիս պաշտոնեական դիրքի չարաշահում, գլորվում հանցագործությունների ճահիճը։ Հայտնի է, թե ինչպիսի ծանր սոցիալական հետևանքներով է հղի կաշառակերությունը։ Հատկապես զայրացուցիչ է, որ կաշառք վերցնողների մեջ լինում են և այնպիսիք, ովքեր իրենք պետք է տան բարձր բարոյականության օրինակ։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը զեկուցման մեջ բերում է պետական կարգապահության կոպիտ խախտումների, սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության, ուրիշ չարաշահումների համար մի շարք անձանց կուսակցական, վարչական պատասխանատվության ենթարկելու փաստեր։

Մի՞թե անբավարար բարոյական դաստիարակության հետևանք չեն, ասում է նա, կոլեկտիվ այգեգործության մեջ թույլ տրված խախտումները։

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննության առավ կոլեկտիվ այգեգործության մեջ տիրող վիճակը և խիստ որոշում ընդունեց այդ հարցի առթիվ։ Կուսակցական, սովետական, տնտեսական, հասարակական կազմակերպություններին հանձնարարվել է պետական պատշաճ կարգուկանոն հաստատել այդ գործում, խստորեն պատժել այն բոլոր անձանց, ընդգծում ենք, բոլոր անձանց, անկախ զբաղեցրած պաշտոնից, որոնք խախտումներ ու չարաշահումներ են թույլ տվել հողամասեր ստանալիս և այգետնակներ կառուցելիս, նրանցից պահանջել, որ դրանք լիովին համապատասխանեցվեն սահմանված նորմաներին։ Վարչական մարմիններին հանձնարարված է հետաքննել թույլ տրված խախտումները և մեղավորներին ենթարկել պատասխանատվության։

Պայքարը բացասական երևույթների դեմ բարձր բարոյականության, բարոյական անաղարտության հաստատման կարևոր նախապայման է։ Ուստի մենք պետք է այսուհետև էլ ամենայն վճռականությամբ պայքարենք մեր բարոյականության հակոտնյաների, հասարակության նկատմամբ սպառողա-



digitised by A.R.A.R.@

կան վերաբերմունքի, քաղքենիության, մակաբուծության դեմ, ոչ մի զիջում չանենք նրանց, ովքեր իրենց ճիշտ չեն պահում, չարաշահում են պաշտոնը, խախտում սոցիալիստական բաշխողական հարաբերությունները, օրինականությունն ու կարգուկանոնը:

Նեգատիվ երևույթների դեմ պայքարի իրենց աշխատանքը Կենտկոմի որոշման պահանջների ոգով պետք է վերակառուցեն հանրապետության իրավապահպան մարմինները: Առավել ևս, որ նրանց առանձին օղակներ միշտ չէ, որ գտնվում են օրենքի արթուն պահապանի իրենց պատասխանատու կոչման բարձրության վրա:

Պայքարը ամենուր և ամեն ինչում կարգուկանոնի հաստատման, կարգապահության ամրապնդման, սովետական օրենքների անվերապահ պահպանման և կատարման համար, իր էությամբ և նպատակներով խորապես արդար գործ է: Այն ամբողջությամբ ելնում է աշխատավոր մարդկանց շահերից, ակտիվ պաշտպանություն գտնում լայն մասսաների կողմից, և դրա համար էլ միշտ եղել է և կլինի հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության կարևորագույն խնդիրներից մեկը:

Ընկերնե՛ր:

Սոցիալ-տնտեսական առաջընթացի պլանների իրականացմանը, այսօր մեր կողմից քննարկվող խնդիրների ու հարցերի լուծմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ամբողջ գործի բարելավմանը կոչված են մեծ ավանդ բերելու մասսայական ինֆորմացիայի միջոցները:

Անվիճելի է մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի խոշոր դերը մեր բոլոր գործերում: Ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ուժեղանում է նրանց ազդեցությունը հանրապետության հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա: Կատարելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, նրանք իրենց դաստիարակչական և կազմակերպչական ջանքերը կենտրոնացնում են կուսակցության և ժողովրդի գործունեության կարևորագույն ուղղություններում, բարձրացնում էկոնոմիկայի, կոմունիստական դաստիարակության, կուլտուրայի հրատապ հարցեր, միջոցներ ձեռնարկում ելույթների ներգործունությունը բարձրացնելու, 11-րդ հնգամյակի առաջադրանքների կատարման գաղափարախոսական ապահովումը բարելավելու համար:

Սակայն ասվածը ամենևին չի նշանակում, թե մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների աշխատանքից արմատախիլ են արված բոլոր բացերն ու թերացումները: Խմբագրությունները դեռ շատ պետք է աշխատեն, որպեսզի իրենց գործունեությունը լիովին համապատասխանի ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջներին:

Առաջվա նման «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ էրմենիստանի», «Ռյա թազա» թերթերի առանձին հրապարակումներում միշտ չէ, որ բավարար են փաստարկվածությունն ու համոզչությունը՝ սոցիալիստական կարգերի առավելություններն ու նվաճումները պրոպագանդելիս, ՍՄԿԿ սոցիալ-տնտեսական քաղաքականությունը պարզաբանելիս: Հաճախ բացակայում է փաստերի ու երևույթների խոր վերլուծությունը, դրանց լուսաբանման մեջ նկատվում են վերացականություն, թեմատիկայի նեղություն, խուսափում սուր թեմաներից, քիչ են քննադատական նյութերը: Հազվադեպ են հայտնվում ուշագրավ, խոր ակնարկներ արտադրության առաջավորների, աշխատանքի հերոսների մասին, ելույթներ՝ նվիրված սոցիալիստական քաղաքակրթվածության պրոբլեմին: Հրապարակվող նյութերում, թեմաների առաջադրման և մշակման մեջ հաճախ բացակայում են նորույթը, թարմությունը, իրազեկությունը:

Առանձին թերթեր ու հանդեսներ, մասնավորապես շրջանային թերթերը, մակերեսայնորեն են լուսաբանում կուսակցական կազմակերպությունների քաղաքական-դաստիարակչական աշխատանքի փորձը: Նրանց հրապարակումները չեն պարունակում գաղափարախոսական ակտիվի կոնկրետ կատեգորիաներին հասցեագրված գործարար հանձնարարականներ:



Հարկավոր է ավելի բովանդակալից դարձնել Հայաստանի կոմկուսի Կենտկոմում անցկացվող «Ինֆորմացիայի օրերը», ավելի արդյունավետ կազմակերպել մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների ղեկավարների համար անցկացվող մամուլի կոնֆերանսները, որտեղ ժուռնալիստների հետ հանդիպեն հանրապետության ղեկավար աշխատողները:

Մեր սոցիալիստական կուլտուրան բարենպաստ ազդեցություն է գործում հասարակության հոգևոր կյանքի վրա: Մենք պետք է ավելի ակտիվորեն ու արդյունավետ օգտագործենք սովետական բազմազգ կուլտուրայի հարաճուն հարստությունները հասարակական գիտակցության ձևավորման, կոմունիստական իդեալների ու բարոյական նորմերի հաստատման, նոր մարդու, բազմակողմանիորեն և ներդաշնակ զարգացած անհատի ձևավորման մեծ խնդիրների իրականացման գործում:

ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի կողմից սովետական գրականության, արվեստի ծառայություններին տրված բարձր գնահատականը վերաբերում է նաև Սովետական Հայաստանի գեղարվեստական մշակույթին: Սովետահայ մշակույթի նկատմամբ մեծ հոգատարության և նրա նվաճումների բարձր գնահատման նոր վառ վկայությունն է վերջերս սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման շնորհումը Գոհար Գասպարյանին, Սերո Խանզադյանին, հայրենիքի բարձր պարգևներով Վարդգես Պետրոսյանի, Սիլվա Կապուտիկյանի, Գևորգ Էմինի, Մկրտիչ Սարգսյանի պարգևատրումը, ՍՍՀՄ պետական մրցանակի շնորհումը Հրանտ Մաթևոսյանին:

Հանրապետության գրողների միությունը, գրական-գեղարվեստական հրատարակչությունների խմբագրությունները ձգտում են այն բանին, որ գրականության բոլոր ժանրերը ավելի խոր ազդեցություն ունենան մարդկանց գործերի ու կյանքի վրա: Քննադատաբար վերանայվում են դրամատիկական և երաժշտական թատրոնների խաղացանկերը, թանգարանների մեծ մասի էքսպոզիցիաները: Ընդլայնվում է սոցիալական պատվերների պրակտիկան դրամատուրգիական, երաժշտական, կերպարվեստի երկերի ստեղծման գործում: Բարձր գնահատականի է արժանի սովետական բանակի ռազմիկների, սահմանապահների հետ Հայաստանի ստեղծագործական կազմակերպությունների շեֆական կապերի համակարգը:

Միևնույն ժամանակ պետք է նշել, որ մեր գրականության և արվեստի վարպետները դեռ քիչ են ստեղծում արդիականության մասշտաբային իմաստավորմամբ և իրենց գաղափարական ուղղվածությամբ, գեղագիտական բարձր մակարդակով ու հնչողությամբ աչքի ընկնող ստեղծագործություններ: Մեր գրողների, արվեստագետների ստեղծագործության մեջ վերջին տարիներս առավել նկատելի է դրսևորվում հրապարակախոսական ուղղվածությունը, նրա ձգտումը մերկացնել հասարակության նկատմամբ սպառողական վերաբերմունքի դրսևորումները, որը, ինչ խոսք, ողջունելի է: Սակայն չի կարող չմտահոգել այն, որ առանձին հեղինակներ ասես ըմբոշխնում են թերությունները, ուշադրությունը հաճախ ավելի շատ բևեռում բացասական հերոսների պատկերմանը: Մի շարք երկերում, պիեսներում ու ներկայացումներում վառ կերպով չի արտացոլվում աշխատավոր մարդու, կոմունիստական շինարարության ակտիվ մասնակցի կերպարը:

Պրոֆեսիոնալ և ինքնագործ վոկալ-գործիքային անսամբլների, էստրադային նվագախմբերի, դիսկոտեկաների, երգիչ-կատարողների ծրագրերում դեռևս քիչ է ներկայացված քաղաքացիական, հայրենասիրական թեմատիկան: Ավելորդ չէ նշել նաև, որ էստրադայում դանդաղ է հաղթահարվում արևմտյան շլյագերների նմանակումը:

Վերջին տարիներս «Հայֆիլմ» կինոստուդիայում ստեղծված գեղարվեստական խոշոր ժապավեններից միայն մի քանիսն են արժանացել հանդիսականների և կինոքննադատության դրվատանքին: Հանդիսատեսը վաղուց սպասում է Հայրենական մեծ պատերազմի իրադարձություններին նվիրված ցայտուն ֆիլմերի: Չի գոհացնում կինոհրապարակախոսության և հատկապես

«Սովետական Հայաստան» կինոհանդեսի պրոֆեսիոնալ-որակական մակարդակը։ Պետկինոն պարտավոր է ավելի խիստ վերահսկողություն հաստատել մի շարք շրջանների ու քաղաքների կինոցանցի նկարացանկի նկատմամբ, թույլ չտալ, որպեսզի ֆինանսական նկատառումները վեր դասվեն դաստիարակչականից։

Արմատախիլ չեն արվել դեպքերը, երբ խմբագրությունների պորտֆելում, թատրոնների, հեռուստատեսության և ռադիոյի բեմադրական պլաններում տեղ են գտնում այնպիսի ստեղծագործություններ, որոնցում թույլ է տրվում ապոլիտիկություն, շեղում կուսակցականության և ժողովրդայնության սկզբունքներից, պատմական ճշմարտության աղավաղում, սովետական իրականության առանձին երևույթների ու փաստերի ոչ ճիշտ մեկնաբանում։

Կուսակցության Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմները, Կամոյի, Ղափանի, Արտաշատի և այլ շրջկոմները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն գեղարվեստական մտավորականության մարքս-լենինյան կրթությանը։ Որոշ ստեղծագործական միություններում, արվեստի և մշակույթի հիմնարկներում բարձր չէ քաղաքական ուսուցման մակարդակը, այստեղ հիմնականում կիրառվում են պարապմունքների պասսիվ ձևեր։

Ստեղծագործական միությունները, նրանց կուսակցական կազմակերպությունները պետք է ավելի շատ զբաղվեն երիտասարդության գաղափարական և մասնագիտական աճի հարցերով, մշտապես հիշելով, որ հոգատարությունը մեր գեղարվեստական մշակույթի վաղվա օրվա նկատմամբ չափազանց կարևոր գործ է։

Թե՛ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, թե՛ հանրապետության կուսակցական կոմիտեները պետք է, ինչպես նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, գիտական և ստեղծագործական մտավորականության շրջանում մշտապես հաստատեն գաղափարական, բարոյական և գեղագիտական պահանջկոտության մթնոլորտը, հետևողականորեն ընդլայնեն սոցիալական պատվերի պրակտիկան, խրախուսեն մշակույթի վարպետների բեղմնավոր ստեղծագործական որոնումը։ Հայաստանի ստեղծագործական միությունները պետք է է՛լ ավելի զարգացնեն շեֆական կապերը աշխատավորական կոլեկտիվների, սովետական բանակի ռազմիկների, սահմանապահների հետ, ավելի ակտիվորեն պրոպագանդեն բազմազգ սոցիալիստական կուլտուրայի նվաճումները։

Ընկերնե՛ր։

Մեզ համար հսկայական կարևորության գործ են գիտական պոտենցիալի հատույցի համակողմանի մեծացումը, ինչպես սոցիալ-տնտեսական զարգացման պրոբլեմների, այնպես էլ աշխատավորների կոմունիստական դաստիարակության պրոբլեմների լուծման գիտական հիմնարկների մասնակցության արդյունավետության բարձրացումը։ Այսօր չափազանց մեծացել են այդ երկու ուղղությամբ գիտությանը ներկայացվող պահանջները։

Պետք է ասել, որ այդ երկու ուղղություններում էլ մեր գիտական հիմնարկները, նրանց կուսակցական կազմակերպությունները, իրականացնելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներն ու հիմնադրույթները, քիչ գործ չեն արել։ Ողջունելի է, որ ընդլայնվել է հանրապետության գիտնականների, հատկապես հասարակագետների անմիջական մասնակցությունը աշխատավորության շրջանում տարվող մասսայական-քաղաքական, դաստիարակչական աշխատանքին։

Մանրամասն կանգ չառնելով կատարված աշխատանքի, ձեռքբերումների վրա, ասենք, որ մեր գիտությունը ընդունակ է և պարտավոր է ավելի արդյունավետորեն լուծել հունիսյան պլենումի որոշումներում և ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ առաջադրված խնդիրները։

Հանրապետության գիտական հիմնարկները դեռևս բավարար կերպով չեն ներգործում հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա, ակտիվորեն չեն մշակում հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման պրոբլեմները։ Կան նաև այնպիսիք, որոնք այդ հարցերից առհասարակ հեռու են մնացել։ Գիտությու-



ների ակադեմիայի մի շարք ինստիտուտների, որոշ բուհերի գործունեությունը առաջվա պես անհրաժեշտ չափով չի կենտրոնացված ժողովրդատնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման վրա։ Գիտահետազոտական աշխատանքների թեմատիկան բավականաչափ հրատապ չէ և միշտ չէ, որ նորաշունչ է։

Դեռևս անբավարար է ապահովվում ֆունդամենտալ մշակումների արդյունքների հանգեցումը այնպիսի ինժեներատեխնիկական լուծումների, որոնք պիտանի լինեին գործնական կիրառության համար, գիտության և տեխնիկայի նվաճումները դանդաղ են ներդրվում ժողովրդական տնտեսության մեջ։ Դեռևս չի կիրառվում հետազոտությունների պլանավորումը ամբողջ ցիկլով՝ մշակումից մինչև ներդրում։ Չի ապահովվում հանրապետության գիտական հիմնարկների և բուհերի հետ արտադրական միավորումների ու ձեռնարկությունների ստեղծագործական համագործակցությունը գիտատեխնիկական առաջընթացի խնդիրների առաջադրման և համատեղ լուծման ասպարեզում։

Երբ մենք խոսում ենք դեպի պրակտիկ խնդիրները գիտության արմատական շրջադարձի անհրաժեշտության մասին, ապա նկատի ունենք և այն, որ պրակտիկան էլ իր հերթին պետք է ավելի զգայուն լինի գիտության նվաճումների նկատմամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների առումով էական բացթողումներ կան գիտությունների ակադեմիայի հասարակագիտական ինստիտուտների, հանրապետության բուհերի, հասարակական գիտությունների ամբիոնների աշխատանքում, և դա իրավացիորեն քննադատված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։

Պետք է ուղղակի ասել՝ հանրապետության հասարակագետ-գիտնականները, գիտական հիմնարկների ղեկավարներն ու նրանց կուսակցական կազմակերպությունները դեռևս չեն ապահովել կուսակցության պահանջներին համապատասխանող գաղափարատեսական աշխատանքի նոր, զգալիորեն ավելի բարձր մակարդակ, իրենց աշխատանքը չեն վերակառուցել այնպես, որ վճռական շրջադարձ կատարվի դեպի ռեալ, գործնական խնդիրները, արդյունավետ օգնություն ցույց տրվի հանրապետության կուսակցական կազմակերպություններին դրանց լուծման գործում։

Հանրապետության գիտությունների ակադեմիան, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը հասարակագետների ջանքերը բավարար չափով չեն նպատակամղում զարգացած սոցիալիզմի հրատապ պրոբլեմների ուսումնասիրությանը՝ կապված հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման պահանջմունքների հետ։ Գիտահետազոտական աշխատանքների պլաններում քիչ տեղ է հատկացվում մարքս-լենինյան տեսության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հրատապ պրոբլեմների մշակմանը։

Անհրաժեշտ է հասնել նաև այն բանին, որպեսզի լրիվ հաղթահարվեն ոչ դասակարգային մոտեցման դրսևորումները պատմական այս կամ այն իրադարձության և անհատի գնահատման ժամանակ, մի բան, որ նույնպես մատնանշվել է Կենտկոմի որոշման մեջ։

Որոշ գիտական հիմնարկների և բուհերի կուսակցական կազմակերպություններ նպատակասլաց աշխատանք չեն տանում ուժեղացնելու կուսակցական ազդեցությունը երիտասարդ գիտնականների աշխարհայացքային և քաղաքացիական դիրքորոշման վրա, բարձրացնելու գիտաշխատողների գաղափարաքաղաքական և մասնագիտական որակավորումը, նրանց ակտիվորեն ներգրավելու գաղափարադաստիարակչական աշխատանքի մեջ։

Գիտական հիմնարկների և բուհերի կուսակցական կազմակերպությունները և ղեկավարները պարտավոր են հետևողականորեն վերացնել նշված թերությունները, աշխատանքը բարձրացնել Կենտկոմի որոշմամբ սահմանված խնդիրների մակարդակին։

Հասուն սոցիալիզմի կատարելագործման, մեր հասարակության կողմից լուծվող խոշորամասշտաբ խնդիրների մեջ, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, կարևոր տեղ է գրավում հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը,

երի նպատակադրումն ու բովանդակությունը ներկայացնում են ժողովրդական կրթության լենինյան սկզբունքների զարգացում, նշանավորում մի նոր փուլ մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության տեսության ու պրակտիկայի մեջ։

Այսօր հարկ է մեկ անգամ ևս ընդգծել, որ հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմիններն ու կազմակերպությունները, արտադրական և տնտեսական հիմնարկներն ու ձեռնարկությունները պարտավոր են ավելի մեծ հոգածություն հանդես բերել մատաղ սերնդի քաղաքացիական ձևավորման նկատմամբ, միավորելով ընտանիքի, ուսումնական հաստատությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը, պատանիների ու աղջիկների մեջ սերմանել գաղափարաբարոյական վեհ հատկություններ։ Նրանք պետք է ջանքեր գործադրեն ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների լրիվ կատարման համար, համառ ու նպատակասլաց իրականացնեն հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը, ստեղծեն արտադրական ուսուցումն ապահովող անհրաժեշտ քանակությամբ աշխատատեղեր, մասնագետների պատրաստումը համապատասխանեցնեն ժողովրդական տնտեսության պահանջմունքներին, քաջալերեն երիտասարդության ձգտումը աշխատելու երկրի հարվածային կառույցներում։

Անհրաժեշտ է հետևողականորեն բարելավել դպրոցականների մասնագիտական կողմնորոշման, աշխատանքային ուսուցման գործը։ Անթույլատրելի է, որ դպրոցների շրջանավարտների մոտավորապես կեսն է միայն ստանում որակավորում, իսկ աշխատանքային ուսուցման պրոֆիլին համապատասխան աշխատանքի է տեղավորվում նրանց լոկ մեկ հինգերորդ մասը։

Դպրոցների աշակերտների աշխատանքային դաստիարակության թերությունն է նաև այն, որ նրանց զգալի մասը (35—40 տոկոսը) ամռան ընթացքում չի ընդգրկվում դպրոցական աշխատանքային միավորումների մեջ։ Լուսավորության մինիստրությունը, ՀԼԿԵՄ Կենտկոմը, հանրապետության ժողովրդական կրթության մարմինները գյուղական դպրոցում պատշաճ ուշադրություն չեն դարձնում աշխատանքային միավորման այնպիսի ձևի, ինչպիսին է աշակերտական արտադրական բրիգադը։

Հանրապետության պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, շատ ուսումնարանների մանկավարժական կոլեկտիվներ, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններ դեռևս չեն հաղթահարել այն թերությունները, որ գոյություն ունեն ուսումնադաստիարակչական պրոցեսի կազմակերպման, կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության, ֆինանսատնտեսական գործունեության մեջ։ Դեռևս լուրջ թերություններ կան նաև երիտասարդ բանվորական կադրերի պատրաստումը պլանավորելու գործում։ Այս ամենը քննադատության է ենթարկվել ՀԿԿ Կենտկոմի պլենումներում։ Այդ մասին ասված է նաև ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Բայց շոշափելի փոփոխություններ դեպի լավը առայժմ չեն նկատվում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը մոտ ժամանակներս քննության կառնեն պրոֆտեխկրթության համակարգի աշխատանքի բարելավման հարցը և կձեռնարկեն ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների կատարումն ապահովող համապատասխան միջոցներ։

Բարելավման կարիք է զգում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերի պատրաստման պլանավորումը։ Հանրապետության պետպլանը, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը և աշխպետկոմը տակավին կոմպլեքսային միջոցառումներ չեն մշակել մասնագետների պատրաստումը հանրապետության ռեալ պահանջմունքներին համապատասխանեցնելու ուղղությամբ։ Բուհերի, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ընդունելության պլանավորումը դեռ հիմնականում իրականացվում է՝ նախորդ տարիների դինամիկան մեխանիկորեն տարածելով հաջորդ տարիների վրա, անտեսվում են կանխագնահատումները, որոնք թույլ կտային նախատեսել հնարավոր որակական և քանակական փոփոխությունները բարձր որակավորման մասնագետների



պատրաստման և օգտագործման բնագավառում, պլանավորելիս թույլ են հաշվի առնվում ժողովրդագրական և սոցիալ-տնտեսական գործոնները։

Եզրափակելով, անհրաժեշտ ենք համարում ընդգծել հետևյալը։ Ժողովրդի հոգևոր կյանքի ոչ մի կողմ, գիտության ու մշակույթի զարգացման ոչ մի հարց չպետք է մնա Կենտկոմի, կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների տեսադաշտից դուրս։ Մենք պետք է հասնենք այդ կարևոր բնագավառում մեր աշխատանքի բարելավման, Կենտկոմի որոշման պահանջների կատարման, ապահովենք ժողովրդի հոգևոր կյանքի հետագա բուռն ծաղկումը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր է դրված՝ ամրապնդելով և զարգացնելով Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների իրագործման աշխատանքում եղած դրական միտումները, գործուն միջոցներ ձեռնարկել գոյություն ունեցող թերությունների վերացման համար, կուսակցության պահանջներին խստիվ համապատասխանեցնել մասսաների մեջ տարվող կազմակերպչական, քաղաքական և գաղափարախոսական ամբողջ գործունեության բովանդակությունը, ոճն ու մեթոդները։

Իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջները, կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները կատարելագործում և բարձրացնում են գաղափարախոսական, քաղդաստիարակչական գործունեության արդյունավետությունը, ընդհանուր առմամբ սկսել են ավելի բազմակողմանիորեն ու ավելի խորը քննության առնել և լուծել այդ աշխատանքի կազմակերպման հարցերը, կուսակցական կոմիտեների գաղափարախոսական և ճյուղային բաժինները ավելի սերտորեն են համագործակցում տեղերում սոցիալ-տնտեսական և գաղափարախոսական պրոցեսներն ուսումնասիրելիս, բյուրոների, պլենումների, ակտիվի ժողովների քննարկմանը ներկայացվող համապատասխան առաջարկություններ ու հանձնարարականներ մշակելիս և այլն։

Մի շարք կուսակցական կոմիտեներ պրակտիկա են դարձրել բյուրոների արտագնա նիստերի անցկացումը խոշոր ձեռնարկություններում և կազմակերպություններում, ինչը նպաստում է կապերի ամրապնդմանը կոմունիստների լայն խավերի հետ, օգնում հաշվի առնելու նրանց կարծիքները, դիտողություններն ու առաջարկությունները հետագա աշխատանքում։

Կուսակցության քաղկոմներում, շրջկոմներում անցկացվել են նորընտիր կուսակցական ակտիվի սեմինար-խորհրդակցություններ, որտեղ քննության են առնվել կուսակցական կոմիտեների գործունեության ոճի ու մեթոդների, կազմակերպական, կուսակցական և գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի պրակտիկայի հետագա կատարելագործման հարցերը։

Բայց այդ կարևոր աշխատանքում մենք դեռ շատ թերություններ ունենք։

Մեզ դեռևս պակասում են քաղաքական սրությունն ու սկզբունքայնությունը մարդկանց դաստիարակության գործում եղած վրիպումներին անդրադառնալիս։ Պետք է ուղղակի ասել, որ շատ կուսակցական կոմիտեների գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքին այսօր էլ դեռ պակասում են ներգործունությունը, խորությունը, ուժերի և ջանքերի բևեռումը սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման գլխավոր ուղղություններում։ Գաղտնիք չէ, որ որոշ կուսակցական կազմակերպություններ գործում են իներցիայի ուժով, չեն հաղթահարում միջոցառումը հանուն միջոցառման անցկացնելու, հանուն հաշվետվության աշխատելու սովորությունը, շատ ջանք ու ժամանակ են վատնում, կազմելով ստերեոտիպ, դեկլարատիվ պլաններ, որոնց կատարումը, բնականաբար, չի նպաստում գործերի վիճակի բարելավմանը։ Եղել են մինիստրություններ և գերատեսչություններ, որոնք իրենց կոլեգիաներում ժամանակին չեն քննարկել պլենումի որոշումները։ Իսկ որոշ տեղերում էլ պլենումի արդյունքների քննարկմանը մոտեցել են ձևականորեն։

Մի շարք շրջկոմներ և քաղկոմներ չեն ազատվել աշխատանքի թղթարա-

րական, դրասենյակային ոճից։ Շրջկոմների, քաղկոմների գաղափարախոսական աշխատողները շատ ժամանակ են վատնում զանազան տեղեկանքներ, զեկուցագրեր, հաշվետվություններ կազմելու վրա։ Պարզ է, որ նման ծանրաբեռնվածության պայմաններում նրանք ժամանակ չեն ունենա կենդանի կազմակերպչական աշխատանքով զբաղվելու սկզբնական կազմակերպություններում։ Իսկ գործերը հարկավոր է այնպես վարել, որ յուրաքանչյուր կուսակցական աշխատող որքան կարելի է ավելի երկար ժամանակ գտնվի սկզբնական կուսկազմակերպությունում։

Մեզ պետք է լրջորեն անհանգստացնի այն հանգամանքը, որ գաղափարախոսական աշխատանքի առանձին հարցեր չեն հասցվում աշխատավորական կոլեկտիվներին, ներփակվում են քաղաքային, շրջանային մակարդակով։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների, ստորին օղակի կուսակցական ու գաղափարախոսական ակտիվի հետ զրույցները ցույց են տալիս, որ դեռևս ոչ բոլորն են լրիվ ծավալով յուրացրել հունիսյան պլենումի որոշումները, չեն կարողանում պլենումի համակուսակցական հիմնադրույթները գործնական, կոնկրետ աշխատանքի վերածել աշխատավորական կոլեկտիվներում։ Առանձին կուսակցական կազմակերպությունների ժողովների, բյուրոների որոշումները լեցուն են ընդհանուր ֆրազներով, կոնկրետ չեն, դրանցով դժվար է որոշել, թե կազմակերպությունը դաստիարակչական ինչ խնդիրներ է դնում իր առջև, թե տվյալ աշխատավորական կոլեկտիվի որ առանձնահատկություններն են հաշվի առնվում գաղափարախոսական աշխատանք ծավալելիս։

Կան սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք հունիսյան պլենումի արդյունքների քննարկումից հետո ոչ մի անգամ վերահսկման կարգով չեն լսել գաղափարախոսական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետ առնչվող հարցեր։

Կուսակցական կոմիտեների առանձին ղեկավար և պատասխանատու աշխատողներ դեռևս թույլ են վերլուծում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, խորամուխ չեն լինում նրանց աշխատանքի ոճին, ժամանակին կոնկրետ օգնություն չեն ցույց տալիս։ Նաև դրանով կարելի է բացատրել այն, որ մի շարք կուսկազմակերպությունների ժողովներում և բյուրոներում քննարկվում են զուտ տնտեսական հարցեր։

Որ մեզ մոտ գաղափարախոսական աշխատանքը դեռ չի դարձել յուրաքանչյուր կոմունիստի գործը, որ մենք չենք սովորել գաղափարադաստիարակչական աշխատանքում լիովին օգտագործել կուսակցության անդամների և, առաջին հերթին, ղեկավար աշխատողների ուժերը, վկայում է նաև այն հանգամանքը, որ շատ կուսկազմակերպություններում քիչ թվով կոմունիստներ ունեն գաղափարախոսական բնույթի հանձնարարություններ, ղեկավարների մի մասը գերադասում է քաղդաստիարակչական աշխատանքով զբաղվելու պարտականությունը դնել իր տեղակալների կամ կուսակցական ակտիվիստների վրա։

Կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների խնդիրն է մշտապես հոգ տանել այս գործում ես կոմունիստների ավանգարդային դերի ապահովման մասին, առավելագույնս օգտագործել անձնական օրինակի դաստիարակչական պոտենցիալը, որը կարող է խանդավառել, մղել լավ գործերի, հուշել օրինակելի վարքագիծ կյանքում և աշխատանքում։ Մենք պարտավոր ենք մշտապես հիշել լենինյան այն խոսքերը, որ «կուսակցության անդամները աշխատանքային կարգապահությամբ ու եռանդով պետք է բոլորի առջևից ընթանան», «անձամբ ներգործեն մարդկանց վրա», և խիստ հաշիվ պահանջենք ղեկավարներից կուսակցական կյանքի նորմերի խախտման, աշխատավորների դաստիարակությանը անձամբ մասնակցելուց խուսափելու համար։

Անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարների, ճյուղային բաժինների, մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղական սովետների գործկոմների, ձեռնարկությունների և կազ-



մակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը մարդկանց հետ տարվող քաղաքական աշխատանքի, գաղափարախոսական, կազմակերպչական և տնտեսական գործունեության սերտ միասնության ապահովման համար։

Մենք պետք է պաշտպանենք աշխատանքի այն բոլոր նոր ձևերն ու մեթոդները, որոնք օգնում են լավագույնս լուծելու դաստիարակչական խնդիրները։ Հարկավոր է լայնորեն տարածել հանրապետության առողջապահության և կապի մինիստրությունների՝ Կենտկոմի որոշմամբ հավանության արժանացած պրակտիկան, երբ աշխատավորական կոլեկտիվներում կանոնավոր կերպով անցկացվում են մարդկանց պահանջմունքներն ու պահանջարկները բավարարելու կոչված ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավար աշխատողների հաշվետվություններ։

Մյուս կարևոր հարցը, որի վրա մեր ուշադրությունն է բևեռում ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, գաղափարախոսական ակտիվի հետ տարվող աշխատանքի բարելավումն է, անհրաժեշտ պայմանների ստեղծումը նրա գաղափարատեսական և պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման համար։

Անցած հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում նկատելիորեն բարելավվել է սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների և գաղափարախոսական աշխատանքի գծով նրանց տեղակալների որակական կազմը, կարգավորվել այս կատեգորիայի հետ տարվող աշխատանքի համակարգը, մշակված են և իրականացվում են նրանց կուսակցական-քաղաքական պատրաստության պլաններ։

Սակայն առկա են նաև էական բացթողումներ։ Ղեկավար կադրերից շատերը չունեն կուսակցական-քաղաքական կրթություն։ Կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցները գործում են ոչ կանոնավոր, պարապմունքների թեմատիկ պլանները չեն կատարվում, ունկնդիրները հաճախ հանդես չեն բերում հետաքրքրություն և ակտիվություն։ Կարգավորման կարիք ունի կուսկազմակերպությունների քարտուղարների գաղափարադաստիարակչական աշխատանքի գծով տեղակալների, կուսխմբերի քարտուղարների և արտադրական բրիգադների կուսկազմակերպիչների ուսուցումը։

Մի խոսքով, դեռ շատ անելիք կա, որպեսզի ամենուրեք աշխատավորության շրջանում քաղաքական աշխատանք տանեն տեսականորեն զինված, գաղափարապես համոզված, բանիմաց, կուսակցության գործին նվիրված, կոմունիստների, բոլոր աշխատավորների մեջ հեղինակություն վայելող մարդիկ։

Գաղափարախոսական գործունեությունը պետք է նպաստի ամենուրեք աշխատանքի լենինյան ոճի՝ գործարար, ստեղծագործական, նորարարական, բարձր գաղափարայնությամբ հագեցած ոճի, հաստատմանը։ Եվ ինքը՝ գաղափարախոսական աշխատանքն էլ պետք է աչքի ընկնի նույն այդ արժանիքներով։

Մենք պետք է մեր ուժերը, գիտելիքները, կուտակած փորձը գործի կոչենք, մոբիլիզացնենք Կենտկոմի որոշման մեջ նշված թերություններն ու բացթողումները շուտափույթ վերացնելու, գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր ուղղություններում ոճն ու մեթոդները կատարելագործելու, դաստիարակության հարցերի նկատմամբ ամենուրեք իրոք սիստեմային, կոմպլեքսային մոտեցում ապահովելու, հեռանկարային, ծրագրանպատակային պլանավորումը ներդնելու, գաղափարական ներգործության բոլոր միջոցների կոորդինացման գործը բարելավելու, դրական փորձն ընդհանրացնելու և տարածելու համար, ամեն ինչ անենք, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ, կուսակցական կոմիտե, կազմակերպություն ապահովի ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների լրիվ կենսագործումը։

Մենք գնում ենք դեպի սովետական հասարակության կյանքի մեծ իրադարձությունները՝ հանրապետության գերագույն սովետների և տեղական սովետների ընտրությունները, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակը, ՍՄԿԿ հերթական XXVII համագումարը։ Այս տարի նշվում է նաև Ռուսաստանում 1905—1907 թվականների հեղափոխության 80-ամյակը։ Այս իրադարձությունները նոր հնարավորու-

թյուններ են ընձեռում, հզոր թափ հաղորդում գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի ուժեղացմանը, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության խորացմանը, մեր առջև կանգնած ստեղծարար խնդիրների կատարման, տասնմեկերորդ հնգամյակի հաջող ավարտման համար մասսաների ջանքերի հետագա ակտիվացմանը։

Հարկավոր է լիովին օգտագործել աշխատավորների հասարակական ու աշխատանքային ակտիվության բարձրացման այդ հնարավորությունները և վերը նշված իրադարձությունները նշանավորել տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած խոշոր նվաճումներով։ Եվ մենք համոզված ենք, որ մեր կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, ամրապնդելով անցյալ տարվա առաջադրանքների կատարման գործում ձեռք բերածը, հաջող մեկնարկ կվերցնեն հնգամյակի ավարտական տարում և կեզրափակեն այն առաջադրված բոլոր քաղաքական և տնտեսական խնդիրների անվերապահ իրականացմամբ։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները ամբողջ կուսակցության գործունեության բազմապլան ու երկարաժամկետ ծրագիրն են։ «Կոմունիստ» հանդեսում հրապարակված «Զարգացած սոցիալիզմի պահանջների մակարդակին» հոդվածում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն գրում է.

«Մենք բոլոր հիմքերն ունենք նշելու գաղափարախոսական աշխատանքում եղած դրական փոփոխությունները ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումից հետո։ Բայց դա միայն առաջին քայլերն են։ Դեռ շատ բան պիտի արվի, որպեսզի մեր պրոպագանդայի բովանդակությունը, օպերատիվությունը, ձևերն ու մեթոդները, նրա նյութատեխնիկական բազան համապատասխանեն սովետական մարդկանց աճող պահանջմունքներին, զարգացած սոցիալիզմի կատարելագործման, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող հարձակողական պայքարի խնդիրներին, որպեսզի պրոպագանդիստական պրակտիկայից արմատախիլ արվեն դատարկահնչյուն ֆրազներին հետամտելը, ձանձրալի շտամպները, աշխատավորներին հուզող սուր հարցերը շրջանցելու փորձերը»։

Մեր խնդիրն է ամրապնդել և զարգացնել դրական միտումները, ակտիվ, հետևողական աշխատանք տանել Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների իրականացման համար, աշխատանք, ուր մեզ անգնահատելի, կոնկրետ օգնություն է ցույց տալիս ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը այսուհետև էլ հետևողականորեն կաշխատի գաղափարախոսական աշխատանքը բարձրացնել մեր սոցիալիստական հասարակության կատարելագործման ասպարեզում կուսակցության կողմից լուծվող մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, մեծացնել նրա ներգործունությունը։

Մենք խորապես գիտակցում ենք այդ խնդրի առաջնահերթ կարևորությունը, խնդիր, որի հետևողական և հաջող լուծումը բոլոր կուսկազմակերպությունների պարտականությունն է, յուրաքանչյուր կոմունիստի գործն ու պարտքը, որտեղ էլ որ նա աշխատելիս լինի։

Թույլ տվեք, վերջում ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացնել, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը ամեն ինչ կանի ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների անվերապահ կատարման համար, կհասնի գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի, կոմունիստական դաստիարակության ամբողջ գործի արդյունավետության անշեղ բարձրացման։ (Բուռն ծափահարություններ):

---

# ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՈՒԺԸ

**Բ. ՍԱՐԿԻՍՈՎ**
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

1985 ԹՎԱԿԱՆԻ օրացույցի առաջին թերթիկը ազդարարեց, որ սովետների երկիրը թևակոխում է իր գոյության 68-րդ տարին։ Հերոսական մաքառումներով գրված այդ տարեգրության առաջին էջը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն էր, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Բոլշևիկների լենինյան կուսակցության ղեկավարությամբ Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները իրենց ձեռքը վերցրին պետության կառավարման ղեկը և ի լուր աշխարհի հայտարարեցին, որ այսուհետև երկրում ամբողջ իշխանությունը պատկանում է սովետներին։

Այսպես ծնվեց սովետական իշխանությունը, և երկիր մոլորակի մեկ վեցերորդ մասում սկսվեց մարդկության երազած կոմունիստական հասարակարգի կառուցումը։

Մեր բազմազգ հայրենիքի ողջ պատմությունը, Հոկտեմբերից հետո ձեռք բերված տիտանական նվաճումները անխզելիորեն կապված են սովետական ժողովրդի քաղաքական ղեկավարի և ավանգարդի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության հետ։ Իր ամբողջ գործունեության ընթացքում կոմունիստների մեր փառապանծ կուսակցությունը հավատարիմ է մնացել նոր հասարակարգին ուղղություն տալու, սովետական դեմոկրատիան անշեղորեն կատարելագործելու և խորացնելու լենինյան պատգամին։

Իր գոյության հենց առաջին օրից սովետական իշխանությունն իր բնույթով դեմոկրատական էր, սոցիալիստական։ Այդ մասին Վ. Ի. Լենինը գրել է. «Սովետական իշխանության դեմոկրատիզմը և նրա սոցիալիստական բնույթն արտահայտվում է այն բանում,

որ գերագույն պետական իշխանությունը սովետներն են, որոնք կազմվում են աշխատավոր ժողովրդի ներկայացուցիչներից (բանվորներից, զինվորներից և գյուղացիներից), որոնց ազատորեն ընտրում են և ցանկացած ժամանակ փոխում են մինչև այժմ կապիտալի կողմից ճնշված մասսաները,

որ... սովետներն իրենց ձեռքում են կենտրոնացնում ոչ միայն օրենսդիր իշխանությունը և օրենքների կատարման նկատմամբ վերահսկողությունը, այլև սովետների բոլոր անդամների կողմից օրենքների անմիջական իրականացումը, նպատակ ունենալով աստիճանաբար հասնել այն բանին, որ ամբողջ աշխատավոր բնակչությունը անխտիր կերպով կատարի օրենսդրության ու պետության կառավարման ֆունկցիաները» (Երկ., հ. 36, էջ 587)։

ՍՍՀՄ սահմանադրությունը ազդարարում է. «Սովետական Միությունում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին։ Ժողովուրդը պետական իշխանությունը իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք ՍՍՀՄ քաղաքական հիմքն են»։

Մեր երկրում, սոցիալիստական ընկերակցության երկրներում սոցիալիս-

տական և կոմունիստական շինարարության հարուստ փորձը վկայում է այն մասին, թե որքան իրավացի էր մեծ Լենինը, նշելով, թե՝ «անհնար է հաղթական սոցիալիզմ, որը չի իրականացնում լիակատար դեմոկրատիա...» (ԵԺ, հ. 27, էջ 307):

Սովետների երկրում դեմոկրատիայի զարգացումն ու կատարելագործումը օբյեկտիվ անհրաժեշտություն է: Սոցիալիզմը միակ հասարակարգն է, որն իրականացնում է հումանիզմի ամենավսեմ իդեալները, նպաստում մարդու հոգևոր հարստացմանը: Հասուն սոցիալիզմի դեմոկրատիան ընդգրկում է հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտները: Մեր համաժողովրդական պետության դեմոկրատիան ոչ միայն պահպանվում, այլև պարտադիր է դարձնում ժողովրդական լայն զանգվածների ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, նրա ներքին և արտաքին քաղաքականության մշակմանն ու կենսագործմանը: Այժմ կոմունիստական կուսակցությունը դեմոկրատիայի առավել խորացումը դիտում է որպես հասուն սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հիմնական լծակներից մեկը: Ինչպես նշում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի մեջ «Հարկավոր է առանձնահատուկ ընդգծել մեր հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում ռեալ դեմոկրատիայի խորացման և հետևողական զարգացման մասին»:

Սոցիալիստական դեմոկրատիայի տեսական ու պրակտիկ հետագա զարգացումը ընդհանրացրեց կուսակցության XXVI համագումարը, որի կանխագծումները կենդանի մարմնավորում ստացան ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումներում: Սովետական հասարակարգի քաղաքական սիստեմի կատարելագործման համար խթանիչ մեծ դեր ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի որոշումները, ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթում շարադրված դրույթները:

ՍՍՀՄ սահմանադրության մեջ հանրագումարի են բերված հասուն սոցիալիզմի դեմոկրատիայի մեծագույն նվաճումները, ցույց են տրված քաղաքացիների լայն իրավունքները, ազատությունները, ինչպես նաև նրանց պարտականությունները, ամփոփված են Սովետական Միության ազգային պետական կառուցվածքը, իշխանության և կառավարման մարմինների համակարգը, համաժողովրդական պետականության մյուս կարևոր սկզբունքները: Սոցիալիստական պետության հիմքը, նրա դեմոկրատիայի լիակատար մարմնացումը ժողովրդական դեպուտատների սովետներն են, որոնք Վ. Ի. Լենինի բնորոշմամբ հանդիսանում են ամենքի համար բաց իշխանություն, որոնք ամեն ինչ անում են մասսայի առաջ, մատչելի են մասսային, ելնում են անմիջականորեն մասսայից: Մեր երկրում հասուն սոցիալիստական հասարակարգի կառուցման շնորհիվ օրինաչափորեն բարձրացավ ներկայացուցչական մարմինների դերը, առավել ամրապնդվեցին նրանց կապերը աշխատավորների հետ: Դեմոկրատիան դասակարգային հասկացություն է, և երբեք էլ այն վերդասակարգային չի եղել ու չի կարող լինել: Հարցն այդպես է դրել Վ. Ի. Լենինը: Հարցն այսօր էլ այդպես է դնում կոմունիստական կուսակցությունը, որի ղեկավարությամբ շարունակ կատարելագործվում են ժողովրդական ներկայացուցչական մարմինների գործունեության ձևերն ու մեթոդները, սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքները: Առանձնապես մեծ ուշադրություն է դարձվել ժողովրդի ընտրյալների՝ դեպուտատների իրավունքների ու պարտականությունների մեջ որոշակիություն հաստատելու խնդրին: Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության կողմից դեպուտատի միասնական օրվա հաստատումը դրա վկայությունն է: Դեպուտատները պարբերաբար հաշվետվություն են տալիս ընտրողներին, իսկ ժողովրդի վստահությունը չարդարացնող դեպուտատները ժամանակից շուտ ետ են կանչվում: Սովետների ընտրությունների ժամանակ, սկսած ժողովրդական դեպուտատների սովետներից մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետը, նրանց կազմը լրացվում է մեկ երրորդով: Ապրելով և աշխատելով ժողովրդի մեջ, աշխա-



տանքային ընկերների շրջապատում, դեպուտատները ամեն օր, ամեն ժամ, ամեն րոպե լսում են նրանց իղձերն ու խոհերը, նրանց առաջարկություններն ու ցանկությունները և դրանք հասցնում սովետի, նրա քննարկմանը: Ահա թե ինչ է նշանակում սովետների աշխատանքը մասսայի աչքի առաջ:

Ինչպես Գերագույն սովետի, այնպես էլ ժողովրդական դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետների դեպուտատների ընտրությունները տեղի են ունենում ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա՝ գաղտնի քվեարկությամբ: Այդ նշանակում է, որ 18 տարին լրացած բոլոր քաղաքացիները, անկախ ազգային պատկանելությունից, անկախ սեռից, դավանանքից, կրթական ցենզից, անկախ նստակեցությունից, սոցիալական ծագումից և գույքային դրությունից կարող են ընտրել և ընտրվել ժողովրդական դեպուտատների սովետներում: Ընտրական իրավունք ունեցող սովետական յուրաքանչյուր քաղաքացի, որի 18 տարին լրացել է, կարող է ընտրվել Գերագույն սովետի դեպուտատ: Ինչպես մեր հանրապետությունում, այնպես էլ եղբայրական մյուս հանրապետություններում, պետական իշխանության բարձրագույն և տեղական մարմինների ընտրությունների անցկացման լուրը խանդավառությամբ ընդունվեց: Եվ միանգամայն բնական է ու օրինաչափ, որ նախընտրական կամպանիան մեր ամբողջ երկրում, ինչպես և մեր հանրապետությունում, դրսևորում է հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը աշխատավորների, սովետական ողջ ժողովրդի սերտ համախմբվածությունը, համոզիչ կերպով վկայում, որ նրանք միահամուռ պաշտպանում են կոմունիստական կուսակցության գլխավոր կուրսը, նրա ներքին և արտաքին քաղաքականությունը: Կուսակցությանը նվիրվածության, նրա նկատմամբ անհուն սիրո դրսևորումը եղավ այն, որ մեր անծայրածիր հայրենիքի տարբեր անկյուններում, ինչպես և մեր հանրապետությունում, աշխատավորները դեպուտատության իրենց առաջին թեկնածու անվանեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյին:

Հանրապետության բարձրագույն օրենսդիր մարմնի համար աշխատավորական կոլեկտիվները առաջադրում են կոմունիստական կուսակցության և սովետական պետության ղեկավարների, իրենց արդար քրտինքով մայր Հայաստանը շենացնող բանվորի ու կոլտնտեսականի, ժողովրդական մտավորականության ներկայացուցիչների, առաջադրում են մարդկանց, ովքեր անձնվիրաբար իրականացնում են կուսակցության կանխագծումները, վայելում ժողովրդի բարձր վստահությունը:

Նախընտրական կամպանիան թևակոխել է վճռական փուլ:

Ընթացիկ ընտրությունների առանձնահատկությունն այն է, որ այն տեղի է ունենում սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային մեծ վերելքի պայմաններում: 1985 թվականը բնորոշ է նրանով, որ այս տարի լրանում է սովետական պետության և կոմունիստական կուսակցության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան 115-րդ տարեդարձը: 1985 թվականը ՍՄԿԿ XXVII համագումարի տարին է: Այն նաև տասնմեկերորդ հնգամյակի ավարտական տարին է: Քառասուն տարի է անցել այն օրից, երբ Ռայխստագի շենքի վրա ծածանվեց հաղթանակի սովետական դրոշը, և սովետական ժողովուրդը պատվով կատարեց աշխարհի ժողովուրդներին ֆաշիզմի ախտից փրկելու պատմական միսիան: Ուրեմն և հաղթանակի 40-ամյակի տարին է: 1985 թվականը մեր հանրապետության աշխատավորության համար նշանավոր է նաև նրանով, որ լրանում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման 65-րդ տարելիցը:

Նախընտրական ժողովներում դեպուտատության թեկնածուների հետ ընտրողների հանդիպումների ժամանակ սրտաբաց, անկեղծ խոսակցություն է ծավալվում մեր գործերի, տնտեսական և սոցիալական զարգացման խնդիրների կատարման մասին: Ընտրողներն արծարծում են արտադրական և հասարակական կյանքի կարևոր հարցեր, արտահայտում են հետաքրքիր մտքեր, առաջարկություններ, անում են քննադատական դիտողություններ, և որ ամենա-

*պահությունը։ Պետական կապիտալ ներդրումների հաշվին գործարկվելու են 6,4 հազար տեղով նախադպրոցական հիմնարկներ, 16,9 հազար տեղով հանրակրթական դպրոցներ, հիվանդանոցային մահճակալների թիվը կավելանա 950-ով և կհասնի 29 հազար 410-ի։*

*Սովետական Հայաստանը պայծառ հավատով է նայում իր ապագային։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունը, մեր կոմունիստները, բոլոր աշխատավորները իրենց գործունեության ծրագիր ընդունեցին «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Կուսակցության ուրիշ շատ որոշումների նման, դա ևս տոգորված է հայ ժողովրդի նկատմամբ ուշադրության և ջերմ հոգատարության ոգով։ Այդ պատմական որոշումը քաղաքական վիթխարի նշանակություն ունեցող փաստաթուղթ է մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների, մեր բոլոր աշխատավորների համար։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ամենայն խորությամբ վերլուծված են հանրապետության տնտեսական, հասարակական, քաղաքական կյանքը, նրա զարգացման միտումները։ Այն մի հիմնարար փաստաթուղթ է, որտեղ շարադրված են մեր հետագա առաջընթացի հիմնական ուղղությունները։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման էությունը տնտեսական, հասարակական, քաղաքական, մշակութային կյանքի բոլոր ասպարեզներում կուսակցական ղեկավարման առավել կատարելագործումն է։*

*Առանց գաղափարական աշխատանքի պատշաճ մակարդակի մենք չէինք ունենա այն մեծ նվաճումները, որոնց հասել ենք։ Առանց նպատակասլաց գաղափարական դաստիարակչական աշխատանքի մենք երբեք չէինք կարող բարձր մակարդակով շարունակել անցած հնգամյակի կարմրադրոշ երթը։ Նախորդ ընտրություններից հետո հանրապետության 20 կազմակերպություններ՝ գիտական, գիտահետազոտական հիմնարկություններ, կոլտնտեսություններ, գործարաններ, միավորումներ, առանձին քաղաքներ արժանացել են հայրենիքի ամենատարբեր պարգևների։ Նրանցից վեցը պարգևատրվել է Պատվո նշան, յոթը՝ Աշխատանքային կարմիր դրոշի, վեցը՝ Ժողովուրդների բարեկամության և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններով։ Իսկ մեր շքեղ մայրաքաղաքը պարգևատրվել է հայրենիքի բարձրագույն պարգևով՝ Լենինի շքանշանով։ Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ բարձր են գնահատված հանրապետության կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքում կատարված դրական տեղաշարժերը։ Որոշման մեջ պարզ ու հստակ գրված է. «Կատարելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ցուցումները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները հասել են գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի որոշակի բարելավման»։*

*ՍՄԿԿ Կենտկոմը բարձր գնահատեց Սովետական Հայաստանում այժմ տիրող բարոյաքաղաքական առողջ մթնոլորտը, որին մենք հասել ենք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի նպատակասլաց գործունեության շնորհիվ։*

*ՍՄԿԿ Կենտկոմը բարձր է գնահատել նաև հանրապետության ժողովրդական դեպուտատների սովետների ծավալած դաստիարակչական մեծ աշխատանքը։ Նշել է նաև արհմիութենական և կոմերիտական կոմիտեների, ստեղծագործական միությունների, ռադիոյի և հեռուստատեսության դրական ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Նշված է, որ «Կուսակցական, կոմերիտական կոմիտեների մշտական ուշադրության կենտրոնում է երիտասարդության մեջ մեր սովետական հայրենիքի համար հպարտության, հայրենասիրության և ինտերնացիոնալ պարտքի կատարման դաստիարակումը»։*

*ՍՄԿԿ Կենտկոմը Հայաստանի կուսկազմակերպություններին պարտավորեցրեց հետևողականորեն զարգացնել գաղափարական աշխատանքում ձեռք*



*բերված դրական միտումները և կուսակցության պահանջներին խստիվ համապատասխանեցնել մասսաների շրջանում կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի բովանդակությունը, ձևերն ու մեթոդները։ Իր սոցիալիստական վերածննդի ամբողջ շրջանում, 1920 թվականի բախտորոշ նոյեմբերից սկսած, ազգային սոցիալիստական պետականության ստեղծումը, սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում աներկյուղ բազմանալու, կառուցելու, դժվարին պահին այլևս մենակ չլինելու փաստը հայ ժողովրդի սիրտը երախտագիտության ջերմ զգացումներով են լցրել հարազատ կոմունիստական կուսակցության և սովետական պետության հանդեպ։ Եվ կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ամենօրյա հոգատարությանը մեր ժողովուրդը պատասխանել է անմնացորդ նվիրումով, հայրենանվեր գործերով, ռուս մեծ ժողովրդի և մեր մեծ հայրենիքի եղբայրական մյուս ժողովուրդների նկատմամբ իր ինտերնացիոնալ պարտքի գիտակցումով։ Նա այսօր էլ ջանք ու եռանդ չի խնայում հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ XXVI և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարների պատմական որոշումները։ Հայ ժողովուրդը, որպես իր գործունեության մարտական ծրագիր է ընդունել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթներում ամփոփված դրույթներն ու եզրակացությունները։*

*Հասուն սոցիալիզմի դեմոկրատիայի մեծ ուժի լիակատար դրսևորման փայլուն արտահայտություն է մեր բազմազգ երկրում ազգային հարցի լուծումը։ Եվ որ ամենակարևորն է, մարդկային պատմության այդ կնճռոտ հարցի դեմոկրատական լուծումը հնարավոր էր հենց միայն սոցիալիզմի պայմաններում։ Սոցիալիզմի ուղին թևակոխած սովետների երկրի պատմական զարգացման օբյեկտիվ ընթացքը թելադրեց միասնական բազմազգ պետության ստեղծման անհրաժեշտությունը։ Կյանքը ցույց տվեց, որ առանց սովետական հանրապետությունների ամուր դաշինքի անհնար է պաշտպանել նրանց գոյությունը միջազգային իմպերիալիզմի ոտնձգություններից։ Արտադրողական ուժերի արագ վերականգնումը, ընդհանուր պլանով միասնական սոցիալիստական տնտեսության ստեղծումը, աշխատանքի ռացիոնալ հասարակական բաժանման ապահովումը, աշխատավորության բարեկեցության բարձրացման անհրաժեշտությունը և, վերջապես, բոլոր ազգերի ու ազգությունների կուլտուրայի համակողմանի զարգացման ու ծաղկման ապահովումը հրամայաբար պահանջում էին սովետական հանրապետությունների անխզելի դաշինք։ Եվ Սովետական Միության կազմավորման դեռ նախօրյակին մեծ առաջնորդը պահանջում էր, որ միավորման կարևոր ու պատասխանատու գործը կատարվի դեմոկրատիզմի ամենախոր սկզբունքների անշեղ կատարմամբ։ «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն թույլ չտար մի ազգի կողմից մյուսի նկատմամբ...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 40, էջ 52)։*

*Դարեր շարունակ մարդկության լավագույն մտածողները գլուխ են ջարդել ցեղային, ռասայական, ազգային կոնֆլիկտներից ելք գտնելու համար։ Հիմա ամբողջ աշխարհը վկա է, որ կոմունիստական կուսակցության կողմից ոգեշնչվող ու ղեկավարվող սովետական մարդկանց համարձակ մտահղացումը իրականացված է։ Մարդկային պատմությանը հայտնի չէ մեկ այլ պետություն, որը պատմական կարճ ժամանակում այնքան շատ բան արած լինի ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման համար, ինչպիսին արել է Լենինի հանճարով ստեղծված Սովետական Միությունը։ Սովետական ժողովուրդները սեփական փորձով համոզվեցին, որ միասնական պետության մեջ համախմբվելը բազմապատկում է իրենց ուժերը, հեշտացնում և արագացնում սոցիալ-տնտեսական ամենաբարդ խնդիրների լուծումը։ Նրանք ականատես եղան նախկին ազգային ծայրամասային ժողովուրդների սոցիալիստական վերածննդի հուզիչ իրողությանը, սոցիալիզմի բարձունքներին հասու լինելու նրանց համարձակ կարողությանը։ Եվ նոր, արդարացի, ամենադեմոկրատական հասարակարգի կառուցման համատեղ պայքարում առաջացան ժողովուրդների բարեկամության նոր որակ ու նոր բովանդակություն,*

առաջացավ աշխատավոր մարդկանց մեծ ու անկեղծ եղբայրությունը, ստեղծվեց ժողովուրդների լենինյան լուսավոր բարեկամությունը։

Սովետական ժողովուրդների համերաշխ ու ապահով ընտանիքում դինամիկ զարգանում է ազգային բոլոր հանրապետությունների տնտեսությունը։ Այդ ամենի հետ միասին, սովետական հանրապետություններն ունեն իրենց ազգային ինքնատիպ դեմքը, ազգային բնորոշ գծերը։

Սովետական Հայաստանը դրա պերճախոս վկայությունն է։ Սովետական Հայաստանի սահմանադրությամբ Հայկական ՍՍՀ տնօրինության ենթակա են այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են սահմանադրության ընդունումը, նրա մեջ փոփոխություններ մտցնելը, հանրապետության օրենսդրությունը, պետական կարգի, քաղաքացիների իրավունքների և ազատությունների պահպանումը, տնտեսության, ժողովրդական կրթության, կուլտուրայի և գիտական հիմնարկությունների, առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի, սոցիալական ապահովության ղեկավարումը։ Սահմանադրության 68-րդ հոդվածում գրված է. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը սուվերեն սոցիալիստական պետություն է։ Իսկ 70-րդ հոդվածում արձանագրված է, որ Հայկական ՍՍՀ-ի տարածքը չի կարող փոխվել առանց նրա համաձայնության։

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության պետական լեզուն հայոց լեզուն է,— գրված է 72-րդ հոդվածում։ Նույն տեղում ասվում է, որ Հայկական ՍՍՀ-ն մասնակցում է ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը ՍՍՀՄ Գերագույն սովետում, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունում, ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության այլ մարմիններում։ Սահմանադրությամբ հայ ժողովրդին վերապահված մեծ իրավունքների կենդանի օրինակ է ներկայիս նախընտրական կամպանիան։ Հաշված օրեր են մնացել մինչև փետրվարի 24-ը, երբ հայ ժողովուրդը, հպարտության և արժանապատվության մեծ զգացումով կկատարի պետական կարևորագույն ակտ և իր ձայնը կտա կոմունիստների և անկուսակցականների միասնական բլոկի թեկնածուների օգտին, կընտրի հանրապետության պետական իշխանության բարձրագույն և տեղական մարմիններ։ Այժմ, երբ մեծ աշխատանք է կատարվում բարձրացնելու սովետների դերն ու հեղինակությունը, կատարելագործելու հասուն սոցիալիզմի քաղաքական սիստեմը, պետական և հասարակական գործերում մասսաների ներգրավման բոլոր ձևերն ու միջոցները, առաջիկա ընտրությունները առավել խոր իմաստ են ստանում։ «Մասսան պետք է իրավունք ունենա ընտրելու իր պատասխանատու ղեկավարներին։ Մասսան պետք է իրավունք ունենա փոխելու նրանց, մասսան պետք է իրավունք ունենա իմանալու և ստուգելու նրանց գործունեության յուրաքանչյուր ամենափոքր քայլը։ Մասսան իրավունք պետք է ունենա մասսայի անդամ բոլոր բանվորներին առանց բացառության առաջ քաշելու տնօրինող ֆունկցիաներ կատարելու» (ԵԼԺ, հ. 36, էջ 194),— գրել է սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը։

Հանրապետության Գերագույն սովետն ունի 340 դեպուտատ։ Իսկ տեղական սովետների դեպուտատների թիվն անցնում է 27 հազարից։ Գերագույն սովետի դեպուտատներից 173-ը բանվորներ ու գյուղացիներ են, 121-ը՝ կանայք։ Հանրապետության տարածքում ապրող բոլոր ազգությունները պատշաճ կերպով ներկայացված են Գերագույն սովետում և տեղական սովետներում։

Բուրժուական շատ սահմանադրություններ հանդիսավոր կերպով հռչակում են քաղաքացիների դեմոկրատական իրավունքները, խոսում են ընդհանուր ընտրական իրավունքի մասին։ Իրականում ընտրական իրավունքները սահմանափակված են նստակեցության, կրթական, գույքային և այլ ցենզերով։ Հենց միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներում գոյություն ունեն ընտրական իրավունքը սահմանափակող 50-ից ավելի ցենզեր։ Եվ դա այսպես կոչված ազատ Ամերիկայում, որը անամոթաբար իրեն իրավունք է վերապահում ազատության և դեմոկրատիայի «դասեր» տալ մյուս երկրներին ու ժողովուրդ-



ներին։ Եվ դա այն դեպքում, երբ այդ նույն ԱՄՆ-ի կոնգրեսում և ոչ մի բանվոր չկա։

Նախորդ ընտրություններից հետո անցած հինգ տարում, ՍՄԿԿ XXVI համագումարի, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների, հետհամագումարյան պլենումների որոշումների լույսի ներքո Հայկական ՍՍՀ սովետների գործունեությունը զգալիորեն ակտիվացել է։ Նրանք առանձնապես մեծ ուշադրություն են դարձնում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը, աշխատավորների դաստիարակությանը, արտադրական և հասարակական կարգ ու կանոնի ամրապնդմանը։ Հանրապետության սովետների ուշադրության կենտրոնում են մասնավորապես լայն սպառման ապրանքների արտադրության ընդլայնումը, աշխատավորության պահանջմունքների առավել բարելավումը։ Սովետները տեղում հսկողություն են սահմանում արդյունաբերության, տրանսպորտի, բնակարանային շինարարության և բաշխման, կենցաղային ծառայության, հասարակական սննդի, ժողովրդական կրթության և այլ ասպարեզներում, լուծում են տեղական նշանակության բոլոր հարցերը։ Նրանց աշխատանքը դարձել է առավել կազմակերպված ու բովանդակալի։ Գործարար մթնոլորտում, նախատեսված ժամկետներում, գումարվում են նստաշրջանները, տեղի են ունենում գործադիր կոմիտեների, մշտական հանձնաժողովների նիստերը, բարելավվել է որոշումների կատարման ստուգումը։ Այդ ամենին նպաստեցին հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի որոշումները։

Սովետական Հայաստանի պետական մարմինների աշխատանքը, սկսած իշխանության բարձրագույն մարմնից՝ Գերագույն սովետից, մինչև նրա ստորին մարմինը՝ գյուղական սովետը, իր մեջ ամփոփում է հանրապետության պետական կյանքի բոլոր ասպարեզները։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը նիստեր է ունենում հաստատված կարգով, տարեկան երկու անգամ՝ ամռանը և ձմռանը։ Այդ նիստերում քննարկվում են Սովետական Հայաստանի կյանքին վերաբերող կարևոր խնդիրներ։

Օրինակի համար վերցնենք 1983 թ. ամառային նստաշրջանը, որը քննարկեց երեք կարևոր հարցեր։ Նախ, հանրապետության կառավարությունը Գերագույն սովետին զեկուցեց այն մասին, թե սովետական մարմինները ինչպես են կատարում պարենային ծրագիրը։ Կիրովականի քաղաքային սովետի գործադիր կոմիտեի նախագահը Գերագույն սովետին հաշվետու եղավ արդյունաբերական ձեռնարկություններում աշխատողների սոցիալ-կենցաղային և առևտրական սպասարկման վիճակի մասին։ Այնուհետև դեպուտատները լսեցին, թե Ախուրյանի շրջանի Կամոյի գյուղական սովետի գործադիր կոմիտեն ինչպես է կատարում ստանձնած պետական պարտականությունները։

Այսպիսով, նստաշրջանը միանգամից լսեց պետական կառավարման բարձրագույն, միջին և ստորին մարմինների հաշվետվությունը։ Անցած տարվա ամառային նստաշրջանում քննարկվեցին Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների սովետների խնդիրների, հանրակրթական և պրոֆեսիոնալ կրթության ռեֆորմի իրականացման միջոցառումների, Գերագույն սովետի ժողովրդական կրթության և կուլտուրայի մշտական հանձնաժողովի ինֆորմացիայի մասին հարցերը։ Բոլորովին վերջերս դեկտեմբերյան նստաշրջանը քննարկեց նույնպես պետական բացառիկ կարևորություն ունեցող այնպիսի հարցեր, ինչպիսիք են հանրապետության 1985 թ. պլանի և անցած տարվա պլանի կատարման մասին, ընթացիկ տարում հանրապետության բյուջեի նախագծի և 1983 թ. բյուջեի կատարման մասին, հանրապետությունում հողային օրենսդրության պահպանման վիճակի մասին, երիտասարդության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքը և այլն։

Պետական կյանքի հարցերը մեզանում լուծվում են ոչ միայն Գերագույն սովետի նստաշրջաններում, այլ նաև Գերագույն սովետի Նախագահությունում, որը Գերագույն սովետի մշտապես գործող մարմինն է և սահմանադրությամբ նախատեսված շրջանակներում իրականացնում է Հայկական ՍՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմնի ֆունկցիաները նրա նստաշըր-

ջանների միջև ընկած ժամանակաշրջանում։ Այդ առումով, հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը նույնպես քննության է առնում պետական կարևոր նշանակություն ունեցող շատ հարցեր։ Մասնավորապես մեծ ուշադրություն ենք նվիրում ինչպես ՍՍՀ Միության, այնպես էլ Հայկական ՍՍՀ գործող օրենսդրության կատարմանը։ Նախագահությունը քննության է առնում հողային, ջրային օրենսդրության պահպանման, առողջապահության, պատմության և կուլտուրայի հուշարձանների, բնության և շրջակա միջավայրի պահպանության, քաղաքացիների նամակների հետ տարվող աշխատանքի, սովետական շինարարության, իրավապահպան և ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության և այլ բնույթի հարցեր։

Ինչպես ասվեց, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը հանրապետությունում սահմանել է Գերագույն սովետի դեպուտատի միասնական օր։ Ամեն տարվա ապրիլ, սեպտեմբեր և դեկտեմբեր ամիսներին, միևնույն օրը, բոլոր դեպուտատները լինում են իրենց ընտրական օկրուգներում, հանդիպում ընտրողների հետ։ Նման հանդիպումների հիմնական բովանդակությունը դեպուտատների հաշվետվությունն է իրենց աշխատանքի մասին։ Վերջին երկու տարիների ընթացքում հանրապետությունում տեղի է ունեցել 1.650 դեպուտատական հանդիպում։ Դրանց մասնակցել է մոտ 413 հազար ընտրող, որոնցից 12 հազար 844-ը անձնական հարցերով եղել է դեպուտատների մոտ ընդունելության։

Նախորդ ընտրություններից հետո, ինչպես և դրանից առաջ, կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը տիտանական ջանքեր են գործադրում աշխարհում խաղաղությունն ապահովելու, մարդկությանը ջերմամիջուկային պատերազմի հրդեհից փրկելու համար։ Մեր կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի, քաղբյուրոյի ամբողջ միջազգային գործունեությունը ներթափանցված են մեծ Լենինի գաղափարներին հավատարմությամբ։ Անշեղորեն կենսագործելով կուսակցության համագումարների կողմից մշակված խաղաղության ծրագիրը, հետևողականորեն կենսագործելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի, տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, Սովետական Միությունը հանդես է գալիս խաղաղասիրական նախաձեռնություններով, որոնք արժանանում են աշխարհի բարի կամքի տեր բոլոր մարդկանց ջերմ հավանությանը։ Անհրաժեշտ հոգատարություն ցուցաբերելով իր և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի անվտանգության նկատմամբ, Լենինի հայրենիքը այսուհետ ևս ամեն ինչ կանի հանուն խաղաղության պահպանման։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես սովետական բոլոր մարդիկ, միահամուռ հավանություն են տալիս համաշխարհային սոցիալիզմի դիրքերն ամրապնդելու, ազգային ազատագրության և սոցիալական առաջադիմության համար ժողովուրդների պայքարը պաշտպանելու, մեր մեծ հայրենիքի պաշտպանական հզորությունը ամրապնդելու, իմպերիալիզմի ոտնձգությունները մերկացնելու նպատակով կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքականությանը։

Հայ ժողովուրդը խորապես գիտակցում է մեր մեծ հայրենիքի, սոցիալիզմի երկրների ճակատագրի նկատմամբ իր մեծ պատասխանատվությունը, ինչպես միշտ իր ջանքն ու կորովը կներդնի սովետական ժողովուրդների լենինյան մեծ բարեկամության ամրապնդմանը և հայրենանվեր աշխատանքով, լենինյան պատգամների նկատմամբ անկեղծ նվիրումով փառավոր նոր էջեր կգրի կոմունիստական հասարակարգի կառուցման հերոսական տարեգրության մեջ։

Կասկած լինել չի կարող, որ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և հանրապետության տեղական սովետների առաջիկա ընտրությունները կհանդիսանան հասուն սոցիալիզմի դեմոկրատիայի նոր, համոզիչ հաղթանակ, կրկին կցուցադրեն հայ ժողովրդի սերտ համախմբվածությունը հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը։

---

# ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՈՒՂԻՈՎ

**Հ. ՍԱՂՈՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի
նախագահի տեղակալ, պետպլանի նախագահ

ՄԵՐ ԵՐԿԻՐԸ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ է Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին, որը կսահմանի ՍՄԿԿ տնտեսական ստրատեգիան և տակտիկան կոմունիստական շինարարության նոր փուլում։

Հայաստանի աշխատավորները, ինչպես և սովետական ողջ ժողովուրդը, խորին գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ 1984 թվականի հոկտեմբերյան պլենումի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի նոյեմբերի 15-ի նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթում բովանդակվող դրույթներն ու հետևությունները։ Քաղբյուրոյի նիստում նախանշված ռացիոնալ տնտեսավարման ստրատեգիան դեպի արտադրության արագ ինտենսիվացում վճռական շրջադարձի կոմպլեքսային ծրագիր է, որը գործնականում ընդգրկում է մեր ողջ տնտեսական կյանքը։ Աշխատանքի ռացիոնալ օգտագործում, արտադրանքի և, ամենից առաջ, ժողովրդական սպառման ապրանքների ու մատուցվող ծառայությունների որակի մշտական բարելավում, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն արմատավորում, կառավարման, ամբողջ ժողովրդատնտեսական մեխանիզմի կատարելագործում՝ ահա ելակետային այն խնդիրները, որոնցում կոնկրետանում է կուսակցության տնտեսական ստրատեգիան արդի փուլում։

Մեր հեռանկարային և ընթացիկ պլանները անփոփոխ կերպով ծառայում են որպես կուսակցության սոցիալական և տնտեսական քաղաքականության իրականացման գործիք, որն ուղղված է զարգացած սոցիալիստական հասարակարգի կատարելագործմանը, արտադրաուժերի զարգացմանը, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացմանը։

Մեր պլանները հիմնված են էկոնոմիկայի պլանային կառավարման սկզբունքների վերաբերյալ լենինյան ուսմունքի վրա, որի էական բաղադրատարրերն են սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքների ճանաչումը և կիրառումը, պլանի սոցիալական և գիտատեխնիկական համակողմանի հիմնավորվածությունը, հեռանկարային և ընթացիկ, ճյուղային և տերիտորիալ պլանավորման միասնությունը, պլանային առաջադրանքների դիրեկտիվությունը և հասցեագրված լինելը, պլանների կատարման ընթացքի մանրակրկիտ ուսումնասիրությունը և իրադրության փոփոխություններին ժամանակին արձագանքելը։

Լենինյան այս հիմնարար սկզբունքները մշտապես պահպանում են իրենց նշանակությունը, և կուսակցությունը դրանք կիրառում է՝ ելնելով պատմական յուրաքանչյուր ժամանակաշրջանի պահանջներից, տնտեսական ու քաղաքական կոնկրետ իրադրությունից։

Հետևելով լենինյան պատգամներին, կուսակցությունը հետևողականորեն

կատարելագործում է սովետական հասարակարգի զարգացման սոցիալ-տընտեսական պրոցեսների պլանային կառավարման մեթոդները: Մեր պլաններին բնորոշ է տնտեսական աճի տեմպերի և համամասնությունների խոր հիմնավորվածությունը, դրանք արտացոլում են տնտեսության կառավարման նոր, հետևողականորեն դեմոկրատական մեթոդները, իրենցից ներկայացնում են մեր երկրում նոր համակարգի կառուցման ծավալուն ծրագիր:

Էկոնոմիկայի պլանավորման հիմնական ձևը՝ հնգամյա պլանները, մեր երկիրը տնտեսական հետամնացությունից հասցրին սոցիալական, գիտատեխնիկական և տնտեսական առաջընթացի բարձունքները: Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում արագ տեմպերով զարգացան մեր հանրապետության էկոնոմիկան և կուլտուրան: Այն ամենը, ինչ ստեղծվել է Հայաստանում սովետական իշխանության տարիներին, կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ ապացույցն է: Սովետական Հայաստանը պատմական կարճ ժամանակամիջոցում դարձավ հզոր արդյունաբերության, բարձր զարգացած գյուղատնտեսության, առաջավոր գիտության և կուլտուրայի հանրապետություն:

Հնգամյակից հնգամյակ ծաղկում է հինավուրց հայկական հողը: Արդյունաբերական արտադրության զարգացման բարձր տեմպերը, որոնք գերազանցում են երկրի հետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանի միջին ցուցանիշները, ինչպես նաև կառուցվածքային էական տեղաշարժերը, հանրապետությունը հասցրին տնտեսական շինարարության բարձր բնագծերի: 1940 թվականի համեմատությամբ 1983 թվականին արդյունաբերական արտադրանքն աճել է 52,8 անգամ, իսկ 63 տարում՝ 169 անգամ:

Վերջին հնգամյակներին Հայաստանում ծնունդ են առել և արագ տեմպերով զարգացել արդյունաբերական այնպիսի նոր ճյուղեր, որոնք որոշում են գիտատեխնիկական առաջընթացը: Դրանցից են ռադիոէլեկտրոնային և էլեկտրոնային, ճշգրիտ հաստոցաշինական և սարքաշինական, ավտոմոբիլային, փոքրածավալ քիմիայի, միկրոբիոլոգիական և բուժական արդյունաբերությունը: Զգալի է թեթև և սննդի արդյունաբերության տեսակարար կշիռը:

Ընդլայնվել է արդյունաբերության տեղաբաշխման աշխարհագրությունը: Արդյունաբերական նոր հանգույցներ և համալիրներ են ստեղծվել Ջարենցավանում, Աբովյանում, Հրազդանում, Ջրվեժում, Սևանում, նոր ձեռնարկություններ են կառուցվել Մարտունիում, Իջևանում, Մասիսում, հանրապետության մյուս շրջաններում: Մեր արդյունաբերության թողարկած շատ արտադրատեսակներ իրենց տեխնիկատնտեսական ցուցանիշներով գտնվում են հայրենական և համաշխարհային լավագույն նմուշների մակարդակին, բարձր հեղինակություն են նվաճել ինչպես երկրում, այնպես էլ արտասահմանում:

Հանրապետության արդյունաբերությունն ավելի ու ավելի ակտիվորեն է մասնակցում երկրից արտահանվող մատակարարումներին: Ավանդական ապրանքների հետ մեկտեղ այսօր աշխարհի տասնյակ երկրներ են ուղարկվում արդիական հզոր էլեկտրական մեքենաներ, տրանսֆորմատորներ, հաշվիչչափիչ տեխնիկա, ծրագրային կառավարմամբ ճշգրիտ մետաղահատ հաստոցներ, բազմազան սարքեր, ռադիոէլեկտրոնային սարքավորումներ և այլն:

Մշտապես աճում է Սովետական Հայաստանի դերը աշխատանքի միութենական տերիտորիալ բաժանման մեջ: Մեր հանրապետությունը մասնագիտանում է քիմիական, գունավոր մետալուրգիայի, էլեկտրատեխնիկական, ռադիոէլեկտրոնային սարքաշինության, տեքստիլ-տրիկոտաժի, կոշկի, գինու-կոնյակի և պահածոների արդյունաբերության առանձին արտադրատեսակների գծով:

Հետևողականորեն և հաջողությամբ իրականացվում են գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման, արդյունաբերական հիմունքներով անասնապահական մթերքներ արտադրող տնտեսությունների ցանցի ընդլայնման, գյուղատնտեսության բոլոր ճյուղերի նյութատեխնիկական բազայի ամրապնդման, քիմիացման և կոմպլեքսային մեքենայացման ներդրման, ոռոգելի հողագործության հետագա զարգացման ծրագրերը:



Ձեռք բերված բարձր ցուցանիշների, 1984 թվականի առաջադրանքների հաջող կատարման կապակցությամբ հանրապետության գյուղատնտեսության աշխատողներին և բոլոր աշխատավորներին ջերմորեն շնորհավորեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն:

Էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման վճռական գործոն է կապիտալ շինարարությունը, որը մեր հանրապետությունում լայն մասշտաբների է հասել հատկապես վերջին շրջանում: Բավական է ասել, որ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ վերջին տասը տարում ավելի շատ կապիտալ ներդրումներ են կատարվել, քան նախորդ հիսուն տարիներին:

Տնտեսական շինարարության հաջողությունների շնորհիվ իրականացվում է սոցիալական զարգացման լայն ծրագիր: Հանրապետությունում ժողովրդական բարեկեցությունը հատկացվում է օգտագործվող ազգային եկամտի երեք քառորդը: Սպասարկման ոլորտի զարգացման տեմպերը վերջին հնգամյակներին, ընդհանուր առմամբ, նկատելիորեն գերազանցում են բնակչության աճի տեմպերը:

Մեծ են հաջողությունները կրթության, կուլտուրայի, առողջապահության բնագավառներում: Հանրապետությունն ունի զարգացած գիտական պոտենցիալ՝ քսանմեկհազարանոց գիտաշխատողների մի ջոկատ, որոնց մեկ երրորդ մասն ունի գիտությունների դոկտորի կամ թեկնածուի աստիճան: Գործում են հարյուրից ավելի գիտական հաստատություններ:

Պատմական կարճ ժամանակամիջոցում այսպիսի հաջողությունները հնարավոր դարձան սոցիալիստական տնտեսավարման պլանային եղանակի շնորհիվ, որը հնարավորություն է ընձեռում ճիշտ սահմանելու ժողովրդատնտեսական համամասնությունները, ռացիոնալ օգտագործելու ռեսուրսները, դրանք կենտրոնացնելով էկոնոմիկայի զարգացման առանցքային ոլորտներում, պայմաններ ստեղծելով ամբողջ ժողովրդական տնտեսության արագ զարգացման համար:

Արտադրության մասշտաբների աճը, աշխատանքի հասարակական բաժանման խորացումը, պլանների սոցիալական կողմնորոշման ուժեղացումը պայմանավորում են ժողովրդատնտեսական պլանավորման մեթոդոլոգիան և կազմակերպումը մշտապես կատարելագործելու անհրաժեշտությունը:

Նոր խնդիրների համեմատ կուսակցությունը XXIV, XXV և XXVI համագումարներում, Կենտկոմի պլենումներում մշակել է պլանավորման կատարելագործման ամբողջական համակարգ և այն ստեղծագործաբար ու հետևողականորեն զարգացնում է ամբողջ տնտեսական մեխանիզմի վերակառուցման հետ միասնության մեջ: Դա նպատակամղված է ինտենսիվ զարգացման ուղու վրա ժողովրդական տնտեսության արագ փոխադրմանը, բոլոր ճյուղերի շրջադարձին՝ դեպի ժողովրդի կենսամակարդակի բարձրացման խնդիրները, նրա ֆիզիկական և հոգևոր ուժերի հետագա վերելքը, ինչպես նաև տնտեսական աճի կայուն տեմպերի ապահովումը, իր արդյունավետությամբ և գիտատեխնիկական մակարդակով աշխարհում ամենաառաջավոր էկոնոմիկայի ստեղծմանը:

Պլանավորման այսօրվա պրակտիկայում լայնորեն կիրառվում է ծրագրանպատակային մեթոդը: Գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական կարևորագույն պրոբլեմների, ինչպես նաև առանձին ռեգիոնների զարգացման նպատակային կոմպլեքսային ծրագրերը դառնում են հեռանկարային պլանների կարևորագույն բաղադրամասերը: Մշակվել և իրականացվում են միութենական մի շարք կոմպլեքսային ծրագրեր (պարենային, էներգետիկ և այլն), որոնք ընդգրկում են նաև մեր հանրապետությունը և կարևոր նշանակություն ունեն նրա համար:

Արդի պայմաններում ժողովրդատնտեսական պլանավորման կատարելագործումը հնարավոր չէ իրականացնել առանց դրա տեխնիկական բազայի արագ զարգացման, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի մասսայական կիրառման: Հանրապետության պետպլանին առընթեր գործում է հաշվիչ կենտրոն, որը նախապլանային նախագծումների տարբերակների հաշվարկման, տնտեսական

ինֆորմացիայի վերամշակման ու վերլուծության, պլանային հաշվարկների ավտոմատացման մեծ ծավալի աշխատանքներ է կատարում։

Տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների գիտական հիմնավորվածության մակարդակի բարձրացումը պահանջում է էկոնոմիկայի ոլորտում հետազոտական աշխատանքների ինտենսիվացում, տնտեսագետ գիտնականների ջանքերի կենտրոնացում պլանավորման և կառավարման կատարելագործման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, ժողովրդական տնտեսության ճյուղերում գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման հրատապ պրոբլեմների հետազոտման վրա։ Այդ խնդիրների լուծմանն ակտիվորեն մասնակցում են պլանային մարմինների համակարգի գիտական հաստատությունները։

Հայկական ՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտը վերջին տարիներին մի շարք լուրջ հետազոտություններ է կատարել, որոնց արդյունքներն օգտագործվում են ժողովրդատնտեսական պլանները և սոցիալ-տնտեսական հեռանկարային զարգացման հիմնական ուղղությունները կազմելիս։

Ինստիտուտը մշակել է նաև հասարակական արդյունքի արտադրության և օգտագործման միջճյուղային դինամիկ հաշվեկշիռը, կատարել է դեմոգրաֆիական կանխատեսումներ, սահմանել է հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջանների հետագա զարգացման հեռանկարները, կազմել է հանրապետության արտադրաուժերի մինչև 2000 թ. հեռանկարային զարգացման ու տեղաբաշխման սխեման և այլն։ Մի շարք էական մշակումներ են կատարել ակադեմիական ինստիտուտները, մինիստրությունների ու գերատեսչությունների հետազոտական հաստատությունները, որոնց աշխատանքի արդյունքները նույնպես իրենց արտացոլումն են գտնում պլանավորման պրակտիկայում։

Մեր հանրապետությունն ունի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի տնտեսագետների որակյալ կադրեր, տնտեսագիտական բուհ, ֆակուլտետներ, ամբիոններ։ Տնտեսագիտական գիտության և պրակտիկայի բոլոր օղակների աշխատանքի սերտ փոխգործողությունը, պետպլանի, գիտությունների ակադեմիայի, մինիստրությունների ու գերատեսչությունների ինստիտուտների ջանքերի միավորումը ժողովրդատնտեսական պլանների գիտական հիմնավորվածության ապահովման գրավականն են։ Պլանային և կառավարման գործունեության վերակառուցման գործում մեծ դեր է խաղում «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի որոշմամբ նախատեսված միջոցառումների հետևողական իրականացումը։

Տնտեսական կյանքի նոր պայմանները պահանջում են գործող տնտեսական մեխանիզմի բարեփոխումներ։ Այս հարցում շեշտը դրվում է 1983 թ. վերջերից իրականացվող խոշորամասշտաբ տնտեսափորձի վրա, որին մասնակցում են մեր հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության 27 ձեռնարկություններ։ Անցած մեկ տարվա արդյունքները վկայում են տնտեսափորձի մեծ հաջողությունը. բարձրացել է արտադրության տնտեսական արդյունավետությունը, արմատապես բարելավվել են պայմանագրային մատակարարումները, նկատելիորեն նվազել են արտադրանքի գերնորմատիվային մնացորդները, բարձրացել է որակը։ Այս տարվանից տնտեսափորձին մասնակցում են հանրապետության թեթև արդյունաբերության և մեքենաշինության ձեռնարկությունները։

Էկոնոմիկայի պլանավորման և կառավարման համակարգի հետևողական կատարելագործումը, պլանային, արտադրական և աշխատանքային կարգապահության ամրապնդումը, դեպի վերջնական բարձր արդյունքներ կողմնորոշվելը արագացնում են ազգային հարստության աճը, հասարակության պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։



Կուսակցությունը պլանային մարմինների, մինիստրությունների ու ձեռնարկությունների առջև խնդիր է դնում պլանները մշակելիս և հիմնավորելիս ապահովել տնտեսական և սոցիալական պրոբլեմների կոմպլեքսային լուծումը, ուժերը և միջոցները կենտրոնացնել համապետական ծրագրերի իրականացման վրա, արագացնել գիտատեխնիկական նվաճումների և մշակումների ներդնումը։ Առաջնակարգ նշանակություն ունեն նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, խնայողության ռեժիմի ուժեղացումը։ Փոխկապակցված ճյուղերի, տնտեսական շրջանների հաշվեկշռված ու կոմպլեքսային պլանավորումը, միջոցների հատկացման առաջնայնության ճիշտ որոշումը նպաստում են ժողովրդատնտեսական առավելագույն արդյունքների ստացմանը։

Հանրապետության պետպլանն իր ջանքերը կենտրոնացնում է պլանների սոցիալական, տնտեսական և գիտատեխնիկական մանրակրկիտ հիմնավորման, բազմաթիվ հրատապ պրոբլեմների լուծման լավագույն տարբերակների որոնումների, էկոնոմիկայի դինամիկ և համամասնական զարգացումն ապահովող միջոցառումների մշակման և դրանք պետական պլաններում արտացոլելու վրա, պայմաններ ստեղծելով ժողովրդական տնտեսության մեջ «նեղ տեղերը» վերացնելու, առկա ռեսուրսներն ու ռեզերվները ռացիոնալ օգտագործելու համար։

Զգալիորեն ընդլայնվել են պետպլանի անելիքները տերիտորիալ պլանավորման և արտադրաուժերի տեղաբաշխման ոլորտում, որոնք նպատակամղված են հանրապետության բոլոր տնտեսական շրջանների կոմպլեքսային զարգացմանը։ Հրատապ խնդիրներից են աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և դրա հետ կապված՝ հանրապետության փոքր քաղաքների և շրջանների զարգացումը, հանրապետության էներգաջերմագազամատակարարման հուսալիության ապահովումը, տրանսպորտային ցանցի կոմպլեքսային զարգացումը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճի արագացումը, շրջակա միջավայրի աղտոտումը նվազեցնող միջոցառումների իրականացումը, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ապահովումը և այլն։

Ներկայումս ՀՍՍՀ պետպլանի կարևորագույն խնդիրն է հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թթ. հնգամյա և մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակահատվածի պլանների մշակումը, որոնք կազմվում են ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից հաստատվելիք հիմնական ուղղություններին համապատասխան։

Հնգամյա և երկարաժամկետ հեռանկարային պլանների մշակման համար մենք ունենք որոշակի բազա։ ՀՍՍՀ պետպլանը և գիտությունների ակադեմիան դեռևս 1983 թվականին կազմել են մինչև 2005 թ. ընդգրկող ժամանակահատվածի գիտատեխնիկական առաջընթացի կոմպլեքսային ծրագիրը։ Մշակվել է նաև հանրապետության արտադրողական ուժերի տեղաբաշխման և զարգացման սխեման մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի համար։ Հնգամյա և հեռանկարային բոլոր ծրագրերի գործնական, կոնկրետ իրականացումն ապահովվում է յուրաքանչյուր տարվա համար կազմվող ընթացիկ, տարեկան պլանների միջոցով։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետն արդեն հաստատել է հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման 1985 թվականի՝ տասնմեկերորդ հնգամյակի ավարտական տարվա պետական պլանը։

Պլանը մշակվել է, ելնելով ՍՍՄԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներից, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի, նրա Կենտկոմի պլենումների այն որոշումներից, որոնցով նախատեսվում է հանրապետության ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի հետագա զարգացումը։

Տարեկան պլանի առաջադրանքները սահմանվել են հնգամյա պլանի հիման վրա, հաշվի առնելով հնգամյակի չորս տարում ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքները, ինչպես նաև հանրապետության մինիստրու-

թյունների ու գերատեսչությունների, նրա տերիտորիայում գտնվող միութենական ենթակայության ձեռնարկությունների առաջարկությունները։

Հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1985 թվականի պետական պլանի նախագիծը համակողմանիորեն քննության առնվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պլանային բյուջետային և մյուս մշտական հանձնաժողովներում, ՀԱՄԽ-ում։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1984 թ. դեկտեմբերի 4-ի նիստում ունեցած իր ելույթում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը տվեց 1985 թվականի պլանի և բյուջեի խոր ու համակողմանի բնութագիրը, վերլուծեց առկա թերությունների ու դժվարությունների պատճառները, նշեց կուսակցական, սովետական, պլանային ու տնտեսական մարմինների հերթական խնդիրները հանրապետության էկոնոմիկայի հետագա զարգացման, տնտեսավարման ոճի և մեթոդների կատարելագործման ասպարեզում։ Ընկեր Դեմիրճյանը շեշտեց ժողովրդատնտեսական ելակետային խնդիրների կատարման գործում մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների ու միավորումների ջանքերն ակտիվացնելու անհրաժեշտությունը, ընդ որում մատնանշելով, որ դրանց լուծումը պայմանավորված է աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությամբ, աշխատանքում կազմակերպվածության հետագա բարձրացմամբ, աշխատանքային կարգապահության ամրապնդմամբ։

Պետք է նշել, որ, չնայած ձեռք բերված հաջողություններին, ժողովրդական տնտեսության ոչ բոլոր օղակներում ու ճյուղերում են գործուն միջոցներ ձեռնարկվել թերությունները վերացնելու և եղած ռեզերվներն օգտագործելու, պետական ու պլանային կարգապահությունը պահպանելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու նպատակով։

Խնդիրն այն է, որ ամրապնդվեն ու զարգացվեն ձեռք բերված հաջողությունները, էկոնոմիկայի զարգացմանը հաղորդվի ավելի մեծ դինամիզմ, ավելի եռանդուն լուծվեն հանրային արտադրության ինտենսիվացման պրոբլեմները։ Հանրապետությունում արտադրվող ազգային եկամուտը, 1984 թվականի համեմատությամբ, ընթացիկ տարում կաճի 6,6 տոկոսով, իսկ ամբողջությամբ վերցրած հնգամյակում՝ 31 տոկոսով, որը համապատասխանում է հնգամյա պլանի առաջադրանքին։

Ազգային եկամտի նախատեսված աճը հիմք կծառայի ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի համար։ Հանրապետությունում օգտագործվող ազգային եկամուտը տարվա ընթացքում կավելանա 5,9 տոկոսով, իսկ հնգամյակում՝ 26 տոկոսով։ Դրա ընդհանուր ծավալում սպառման ֆոնդի բաժինը, որի հաշվին են բավարարվում բնակչության նյութական ու հոգևոր պահանջմունքները, կհասնի 71 տոկոսի։

Բնակչության պահանջմունքների բավարարման համար մեծ նշանակություն կունենա պարենային ծրագրի, ինչպես նաև ներկայումս մշակվող՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ու ծառայությունների համակարգի զարգացման կոմպլեքսային ծրագրի հետևողական իրագործումը։

Առաջիկայում կուժեղացվի էկոնոմիկայի աճի ինտենսիվ գործոնների առավելագույն օգտագործման նպատակով տարվող աշխատանքը։ Արտադրության ինտենսիվացման և արդյունավետության ելակետային ցուցանիշը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Պլանով նախատեսված է հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել տարվա ընթացքում 5,1 և հնգամյակում՝ 20,8 տոկոսով։ Դա հնարավորություն կընձեռի ստանալու ազգային եկամտի հավելաճի 79 տոկոսը, արդյունաբերական արտադրանքի հավելաճի 59 տոկոսը և շինմոնտաժային աշխատանքների ամբողջ հավելաճը։

Հանրային արտադրության նյութատարությունը նախատեսվում է հնգամյակում իջեցնել 3,7 տոկոսով, որը կապահովի նյութական ծախսումների 197 միլիոն ռուբլու տնտեսում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինք-



նարժեքի իջեցման առաջադրանքների կատարումը պետք է մշտապես գտնվի մինիստրությունների ու գերատեսչությունների, միավորումների ու ձեռնարկությունների, բոլոր տնտեսական ու սովետական մարմինների ուշադրության կենտրոնում և կասկածից վեր է, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում արտապլանային խնայողության ֆոնդ ստեղծելու, տարեկան երկու օր տնտեսված նյութերով, հումքով և վառելիքով աշխատելու՝ առաջավոր արտադրական կոլեկտիվների նախաձեռնությունը լայն պաշտպանություն կգտնի մեր հանրապետությունում։

Մեծ ուշադրություն կնվիրվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինմանը։ Աշխատանքի ֆոնդազինվածությունը տարվա ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ կաճի 5,2 տոկոսով։

Հանրապետության գիտական հաստատությունների ջանքերը կուղղվեն էներգետիկայի, գյուղատնտեսության, շրջակա միջավայրի պահպանության ու բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և այլ բնագավառներում հանրապետության առջև ծառացած մի շարք սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման գիտատեխնիկական, նպատակային ու կոմպլեքսային ծրագրերի մշակմանը։ Նախատեսվում է գիտական հետազոտություններ կատարել 340 թեմաներով, արմատավորել նոր տեխնիկայի ավելի քան 900 կարևորագույն միջոցառում՝ արդյունաբերական արտադրությունում տարեկան շուրջ 70 միլիոն ռուբլու տնտեսական օգուտով։

Պլանում արտացոլում են գտել պլանավորման և տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման վերաբերյալ կուսակցության և կառավարության պահանջները։

Արդյունաբերության զարգացումը սահմանված է՝ հաշվի առնելով տասնմեկերորդ հնգամյա պլանի առաջադրանքների կատարումն ապահովելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, եղած թերությունները վերացնելու, պլանային ու պետական կարգապահությունն ամրապնդելու ասպարեզում ճյուղի առջև ծառացած խնդիրների իրականացումը։

Արդյունաբերական արտադրության ծավալը նախատեսվում է ավելացնել տարվա ընթացքում 4,6 տոկոսով և հնգամյակում՝ 30 տոկոսով, որը համապատասխանում է հնգամյա պլանի առաջադրանքին։ Հնգամյակում դրա 1.780 միլիոն ռուբլու բացարձակ աճը հիմնականում կապահովվի ի հաշիվ գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման, տեխնիկական վերազինման և առկա կարողությունների առավել լրիվ օգտագործման։

Արդյունաբերական արտադրության աճի հնգամյա պլանի առաջադրանքի մակարդակով կամ դրա գերազանցումով է նախատեսված մեքենաշինության ու մետաղամշակման, գունավոր ու սև մետալուրգիայի ճյուղերի, անտառային ու փայտամշակման, թեթև, համակցված կերի և պոլիգրաֆիական արդյունաբերության զարգացումը։ Դրանով իսկ պահպանվում է հանրապետության համար հնգամյա պլանով նախատեսված արդյունաբերության ճյուղային կառուցվածքը, մեծանում է առաջադիմական, սակավ նյութատար և գիտությամբ հագեցած ճյուղերի տեսակարար կշիռը։

Ինչպես և նախատեսված էր հնգամյա պլանով, «Բ» խմբի արտադրանքի հավելաճը հինգ տարում առաջ կանցնի 35,9 տոկոսով, «Ա» խմբի համեմատությամբ՝ 26,9 տոկոսով։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը մանրածախ գներով նախատեսված է 4.967 միլիոն ռուբլու ծավալով։

Պլանում մեծ ուշադրություն է նվիրված թողարկվող արտադրանքի որակի, տեսականու ընդլայնման ու նորացման հարցերին։ Որակի բարձր կարգի արտադրանքի բաժինը արտադրության ընդհանուր ծավալում կկազմի 21,3 տոկոս։

Էլեկտրաէներգիայի արտադրությունը նախատեսված է հասցնել 14,78 միլիարդ կիլովատ ժամի, դրա սպառումը ժողովրդական տնտեսության մեջ՝ 12,2 միլիարդ կիլովատ ժամի։ Կշարունակվի Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանի, Հայկական ատոմային էլեկտրակայանի շինարարությունը, կգործարկվի Իլյիչովսկ—Երևան գազամուղը։

Գունավոր մետալուրգիայում, ի հաշիվ հումքային բազայի և արտադրական կարողությունների ավելի ռացիոնալ օգտագործման, արտադրանքի թո-

ղարկման ծավալը հնգամյակի առաջադրանքը կգերազանցի 3,3 կետով, ընդ որում Երևանի օդային ավազանի վիճակը բարելավելու նպատակով կդադարեցվի անմշակ ալյումինի թողարկումը։

Քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալի աճը հիմնականում կապահովվի կաուստիկ սոդայի, քիմիական թելերի ու մանրաթելերի, սինթետիկ ձյութերի ու պլաստմասսաների, ռետինե կոշիկի թողարկման ավելացմամբ։ Կգործարկվեն քլորոպրենային կաուչուկի արտադրության կարողություններ, կշարունակվի քլորի նոր արտադրության շինարարությունը։

Ինչպես և նախկինում, հատուկ նշանակություն կունենա, ամբողջությամբ վերցրած արդյունաբերության աճի տեմպերի համեմատությամբ, մեքենաշինության առաջանցիկ զարգացումը։ Ճյուղի արտադրանքի ծավալը տարվա ընթացքում կմեծանա 8,2 տոկոսով, հնգամյակում՝ 64 տոկոսով՝ հնգամյա պլանի 60,4 տոկոս առաջադրանքի դիմաց։ Արտադրանքի թողարկման հավելաճը կապահովվի հիմնականում նրա բոլոր ճյուղերի տեխնիկական մակարդակի բարձրացման հաշվին և, ամենից առաջ, գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման միջոցով։ Աճի բարձր տեմպը, հանրապետությունում ընդունված ուղղությանը համապատասխան, ապահովվում է ի հաշիվ ռադիոէլեկտրոնային արդյունաբերության, հաստոցաշինության, ավտոմոբիլային արդյունաբերության և այլ ճյուղերի արագ զարգացման։

Կավելանա կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների թողարկումը, կընդլայնվի անվանացանկը, կավարտվի Մարալիկի լուսատեխնիկական էլեկտրասարքավորումների և Գորիսի միկրոէլեկտրաշարժիչների գործարանների շինարարությունը։

ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության կառավարությունը բոլոր միջոցները ձեռնարկում են ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի զարգացման ծրագիրը հետևողականորեն իրականացնելու համար։ Առաջադրված խնդիրները նախատեսվում է իրագործել կառավարման, պլանավորման և տնտեսական խթանման կատարելագործման, կոլտնտեսությունների, սովխոզների և ագրոարդյունաբերական համալիրի մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման, աշխատանքի արդյունավետության բարձրացման, գյուղում սոցիալ-կենցաղային պայմանների բարելավման միջոցով։

Ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի զարգացմանը 1985 թվականին կհատկացվեն 363 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։ ՍՄԿԿ Կենտկոմի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում ընդունած՝ պարենային ֆոնդի կայուն մեծացման նպատակով մելիորացիայի, մելիորացված հողերի օգտագործման արդյունավետության բարձրացման երկարաժամկետ ծրագրի մասին որոշումների հիման վրա կիրականացվեն մեծ ծավալի մելիորացիոն աշխատանքներ։ Ոռոգելի հողերի տարածքը 1985 թվականին կավելանա 6 հազար հեկտարով, իսկ տասնմեկերորդ հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ՝ 30 հազար հեկտարով։ Կջրարբիացվեն 15 հազար հեկտար արոտավայրեր, կկատարվեն հողերի մելիորացիոն վիճակի բարելավման, ոռոգման համակարգերի վերակառուցման և դրանց ջրապահովվածության աշխատանքներ։ Կավարտվի Սևաբերդի ջրամբարի, Ռանչպարի պոմպակայանի շինարարությունը, կշարունակվեն Հերհերի ջրամբարի, Թալինի ոռոգման համակարգի 3-րդ հերթի շինարարության աշխատանքները, ինչպես նաև կսկսվի Գետիկի և Կապսի ջրամբարների շինարարությունը։ Կշարունակվեն թռչնաֆաբրիկաներին և անասնապահական կոմպլեքսներին կից ավանների շինարարությունը, Բաղրամյանի շրջանում նոր սովխոզների ստեղծումը, ինչպես նաև ջրամբարների կառուցման գոտում եղած գյուղերի վերաբնակեցումը։ Զգալիորեն կավելանա գյուղատնտեսական տեխնիկան։ Գյուղատնտեսությունը կստանա 1.660 բեռնատար ավտոմոբիլ, 1.270 տրակտոր, 1.250 տրակտորային կցան, 170 հատիկահավաք կոմբայն և այլ բարձրարտադրողական տեխնիկա։ Գյուղում բնակարանային-կոմունալ և կուլտուր-կենցաղային



շինարարությանը կհատկացվեն 67 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ կամ 24 տոկոսով ավելի, քան 1984 թվականին։

Գյուղատնտեսության զարգացման առաջադրանքները 1985 թվականին կիրագործվեն հիմնականում ի հաշիվ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների ու թռչունների մթերատվության բարձրացման, աշխատանքի հստակ կազմակերպման և տեխնիկայի առավել արդյունավետ օգտագործման, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրության կառուցվածքի բարելավման։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը նախատեսված է 920 միլիոն ռուբլու ծավալով, որը հնգամյակում միջին տարեկան արտադրանքի հաշվով, տասներորդ հնգամյակում ձեռք բերված նույն ցուցանիշի համեմատությամբ, ավելի կլինի 13 տոկոսով՝ հնգամյա պլանով սահմանված 10,9 տոկոսի դիմաց։

Հացահատիկային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության ու գնումների ծավալները նախատեսված են հնգամյա պլանի առաջադրանքներին համապատասխան, իսկ խաղողինը, պտղինը և խորդենունը՝ որոշ չափով պակաս, որը կապված է 1982—1984 թվականների ձմռան ընթացքում տարերային աղետների հետևանքով տնկարկների ու ցանքերի վնասվելու հետ։

Առանձնահատուկ ուշադրություն կնվիրվի անասնաբուծության զարգացմանը։ Արդյունաբերական հիմունքներով անասնապահական մթերքների արտադրության տեսակարար կշիռը հանրային սեկտորի արտադրանքի ընդհանուր ծավալում կկազմի մսինը՝ 31, ձվինը՝ մոտ 90 տոկոս։ Այս ամենը հնարավորություն կընձեռի 1984 թվականի համեմատությամբ մեծացնել պետական գնումների ծավալները։

Անձնական և օժանդակ տնտեսությունների կշռադատված ու կազմակերպված զարգացման ավելի գործուն միջոցներ ձեռնարկելու մասին ՀԿԿ Կենտկոմի ցուցումներին համապատասխան, պլանում նախատեսված է նրանց հնարավոր օգնություն ցույց տալ անհրաժեշտ գույք, պարարտանյութեր, կեր, խոճկորներ, թռչնի ճտեր ձեռք բերելու, ինչպես նաև արտադրանքի ավելցուկը իրացնելու գործում։

Սննդարդյունաբերության ճյուղերի արտադրանքի կարևորագույն տեսակների թողարկման ծավալները սահմանված են՝ ելնելով արդյունաբերական մշակման հանձնվող գյուղատնտեսական հումքի մթերումների ծավալներից, ինչպես նաև պարենային ապրանքների համար առևտրական կազմակերպությունների ներկայացրած հայտերից։

Տրանսպորտի բոլոր տեսակների հետագա զարգացումը և համակողմանի կատարելագործումը նախատեսվել են՝ հաշվի առնելով փոխադրումների նկատմամբ ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքների բավարարումը։ Կաճեն ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը և ուղևորների փոխադրումները։ Նախատեսվում է կառուցել և վերակառուցել ընդհանուր օգտագործման 76 կիլոմետր ճանապարհներ, ավարտել Իջևան—Հրազդան մագիստրալային երկաթուղու շինարարությունը։

Կապի արտադրանքի ծավալը հինգ տարում հնգամյա պլանի առաջադրանքից բարձր է 3,1 կետով։ Քաղաքային հեռախոսակայանների տարողությունը հնգամյակում կմեծանա 29, իսկ գյուղականը՝ 36,5 տոկոսով։

Հանրապետության տնտեսական պոտենցիալի աճը վճռականապես պայմանավորված է կապիտալ ներդրումների ծավալներով և օգտագործման արդյունավետությամբ։ Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները ֆինանսավորման բոլոր աղբյուրներից 1985 թվականին կկազմեն 1.456 միլիոն ռուբլի, որը հնգամյա պլանով սահմանվածից ավելի է 21,8 տոկոսով։ Պետական կապիտալ ներդրումների 71,7 տոկոսը կհատկացվի արտադրական օբյեկտների շինարարությանը։ Այդ միջոցների նշանակալի մասը, արդեն ներդրված ռեսուրսներն ավելի արդյունավետ օգտագործելու նպատակով,

կուղղվի գործող ձեռնարկությունների վերակառուցմանը, ընդլայնմանը և տեխնիկական վերազինմանը:

Հանրապետությունում ստեղծված տնտեսական պոտենցիալը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը հիմք կհանդիսանան բնակչության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման համար: Այդ նպատակին կուղղվի օգտագործվող ազգային եկամտի 77 տոկոսը: Կբարձրանան բնակչության ռեալ եկամուտները: Նախատեսվում է բանվորների ու ծառայողների միջին ամսական աշխատավարձը հասցնել 181,5 ռուբլու, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 167 ռուբլու:

Բնակչության եկամուտների ու բարեկեցության աճի կարևոր աղբյուր են սպառման հասարակական ֆոնդերից արվող վճարումներն ու տրամադրվող արտոնությունները, որոնց չափը բնակչության մեկ շնչի հաշվով կկազմի 403 ռուբլի:

Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը կկազմի 3.150 միլիոն ռուբլի:

Լայն ճակատով կընթանա բնակարանային շինարարությունը: Նախատեսվում է ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին շահագործման հանձնել 1.198 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր՝ հնգամյա պլանով սահմանված 1.001 հազար քառակուսի մետրի դիմաց: Հնգամյակի ընթացքում ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին շահագործման կհանձնվեն 5.479 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր, որը 73 հազար քառակուսի մետրով կգերազանցի հնգամյա պլանի առաջադրանքը: Բնակարանային շինարարության նախատեսված ծավալը հնարավորություն կընձեռի ընդհանուր տարածությամբ քաղաքային մեկ բնակչի միջին ապահովվածությունը 1985 թվականի վերջում հասցնելու 12,75 քառակուսի մետրի:

Նախատեսված են իրականացնել շրջակա միջավայրի պահպանության կոմպլեքսային միջոցառումներ: Խնդիր է դրված կեղտաջրերի մաքրման կայաններ գործարկել Էջմիածնում և Ապարանում, շարունակել դրանց շինարարությունը Կիրովականում, Սպիտակում, Դիլիջանում, Մասիսում: Կշարունակվի նաև Սևանա լճի բնապահպան միջոցառումների իրականացումը: Բնության պահպանման միջոցառումների իրագործման համար հատկացվել են 48,8 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ:

1985 թվականի պլանով նախատեսվող առաջադրանքներն ապահովում են տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրների և հիմնական ուղղությունների իրականացումը:

Կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների առաջնահերթ խնդիրն է՝ հետևողական աշխատանք տանել պլանների կատարումը թե՛ քանակական և թե որակական ցուցանիշներով յուրաքանչյուր ձեռնարկության, կազմակերպության, ճյուղի կողմից ապահովելու նպատակով: Նրանց ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն արտադրության ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացման, արտադրանքի և աշխատանքի որակի ըստ ամենայնի բարձրացման, ինքնարժեքի իջեցման, առկա արտադրական, գիտատեխնիկական պոտենցիալի, բոլոր տեսակի ռեսուրսների լրիվին ու բարձրարդյունավետ օգտագործման, արտադրության կառավարման, կազմակերպման և տեխնոլոգիայի կատարելագործման հարցերը:

Հանրապետության աշխատավորներն ակտիվորեն ներգրավվել են հնգամյակի ավարտական տարվա առաջադրանքների իրականացման համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ, նրանք աշխատանքային մեծ նվաճումներով կդիմավորեն մեր լենինյան կուսակցության XXVII համագումարը, Հայրենական մեծ պատերազմի հաղթանակի 40-ամյակը, նոր, խոշոր հաջողությունների կհասնեն հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման գործում:

---



# ԱՐԻՈՒԹՅԱՆ ԳԱԳԱԹԸ

ՈՉ ՌՈՒՍ ԱԶԳՈՒԹՅԱՆ ռազմագերիների ճամբարում, որը տեղավորված էր Վարշավայից ոչ հեռու Բենյամինովո վայրում, 1942 թ. մայիսից գործել սկսեց հակաֆաշիստական ընդհատակյա հայրենասիրական կազմակերպությունը (ՀԸՀԿ): Դրա ստեղծման նախաձեռնողը և ղեկավարը մայոր Ստեփան Հակոբի Յաղջյանն էր (տե՛ս «Советская историческая энциклопедия», т. 1, стр. 614):

Ընդհատակյա կազմակերպության ստեղծման գաղափարին նա հանգեց երկար մտորումներից հետո, երբ դեռևս գտնվում էր Միտավիի ճամբարում: Այնտեղ սարսափելի իրադրություն էր. ամեն օր սովից ու հիվանդություններից մարդիկ էին մեռնում, գնդակահարում էին ի հայտ բերված հայրենասերներին: Ծանր վիրավոր Յաղջյանի կյանքը մազից էր կախված: Սակայն պայքարի նրա կամքը անսասան էր, միտքը գործում էր հստակ:

Նա անընդունելի էր համարում միայնակ կամ մի քանի ընկերներով փախուստը: Նրա համար պարզ էր, որ ճամբարը մարտադաշտ է, ռազմաճակատի շարունակությունը: Յուրաքանչյուր ռազմագերի մարտիկ է, և նրա գործողությունները պարտավոր է ղեկավարել կոմունիստ սպան: Ս. Յաղջյանը իր խնդիրն էր համարում ստեղծել մի կազմակերպություն, որը կարողանար ջլատել դավաճանների գործունեությունը, ոտքի հանել ռազմագերիներին, կազմակերպել նրանց մասսայական փախուստը:

Յաղջյանը կրթված, լայնախոհ սպա էր. հաջողությամբ ավարտել էր Լենինգրադի էլեկտրատեխնիկական ռազմական ակադեմիայի հրամանատարական և ինժեներային ֆակուլտետները, աչքի էր ընկնում մտածողության մասշտաբայնությամբ և բացառիկ խիզախությամբ:

Միտավիի ճամբարում Ս. Յաղջյանը չհասցրեց իրականացնել իր մտահղացումները: Երբ նա սկսեց ապաքինվել, նրան ուղարկեցին Բենյամինովոյի ճամբարը: Շուտով այստեղ են ընկնում նաև նրա հին ընկերները, մայորներ Վահան Վարդանյանը, Ալեքսանդր Ղազարյանը և Դավիթ Մինասյանը, որոնց հետ Յաղջյանը ծառայել էր Անդրկովկասյան զինվորական օկրուգում դեռևս մինչև պատերազմը: Նրանք ընդգրկվեցին ՀԸՀԿ-ի բյուրոյի կազմում: Բյուրոյի հինգերորդ անդամը դարձավ կապիտան Ավետիս Կարապետյանը: Նրանց բոլորին բաժին էր ընկել նույն ճակատագիրը, ինչ որ Յաղջյանին: Նրանք կադրային սպաներ էին, որոնք զբաղեցնում էին պատասխանատու պաշտոններ և կրեցին հիտլերյան Գերմանիայի ռազմական մեքենայի առաջին հարվածները: Ստանալով ծանր վերքեր թշնամու հետ ունեցած դաժան գոտեմարտում՝ նրանք իրենց կամքից անկախ հայտնվել էին ֆաշիստական գերության մեջ:

Բյուրոյի անդամները, որպես կոմունիստներ և ավագ սպաներ, իրենց հաշիվ էին տալիս, թե ինչպիսի պատասխանատվություն են ստանձնում՝ ստեղծելով ընդհատակյա կազմակերպությունը: Կտրված լինելով հայրենիքից՝ նրանք ստիպված էին բոլոր հարցերը լուծել ինքնուրույնաբար:

ՀԸՀԿ-ի գործունեության համար դրական նշանակություն ուներ և այն հանգամանքը, որ Ս. Յաղջյանը գիտեր շատ լեզուներ, այդ թվում՝ գերմաներեն և ֆրանսերեն: Դա օգնում էր «կապեր» հաստատելու մարդկանց հետ, հայտնաբերելու գերիներին կարեկցող անձանց և ստանալու անհրաժեշտ ինֆորմացիա:

Ընդհատակային աշխատանքը բարդ գիտություն է։ Այդ գիտությունը բյուրոյի անդամներին չէին ուսուցանել ոչ դպրոցներում և ոչ էլ ակադեմիաներում։ Նրանց վիճակված էր ինքնուրույն սովորել այն։ Սովորեցին իրենք, սովորեցրին և ուրիշներին։

Կազմակերպությունը շղթայաձև կառուցվածք ուներ, յուրաքանչյուրը գիտեր միայն մի քանի մարդու։ Այդպիսի կառուցվածքը, ինչ-որ օղակի ձախողման դեպքում, հնարավորություն կտար խուսափել ողջ կազմակերպության բացահայտումից։

Ընդհատակայինների աշխատանքը բազմաբնույթ էր։ Նրանք ծավալում էին հակաֆաշիստական պրոպագանդա, թաքցնում քաղաշխատողներին և հրեա ազգության գերիներին։ Այդ խնդիրները ՀԸՀԿ-ն հաջողությամբ լուծում էր։ Նրա ուժն ու ազդեցությունը օրեցօր աճում էին։ Ամենադժվարին և բարդ խնդիրը ապստամբության և մասսայական փախուստի կազմակերպումն էր։ ՀԸՀԿ-ն չէր կարող լուծել այն միայն իր ուժերով։ Պահանջվում էր լեհական հայրենասերների օգնությունը։ Այն պահին, երբ ավտովարորդ Ռուբեն Գալըստյանի օգնությամբ հաստատվել էին առաջին կապերը նրանց հետ, բոլոր հայ գերիներին, մոտ հազար մարդու, տեղափոխեցին Դեմբլինի ճամբար։

ՀԸՀԿ-ի գործունեության առաջին փուլում նրա ղեկավարների միջև առանձնակի տարաձայնություններ չծագեցին։ Եթե տարակարծություն է եղել, ապա արագ հանգել են միասնության։ Դեմբլինում բորբոքվեց շատ լուրջ վեճ, որը սկզբունքային նշանակություն ուներ ընդհատակյա կազմակերպության հետագա գործունեության համար։

1941 թ. սեպտեմբերն էր։ Դեմբլինից ոչ հեռու, Պուլավիում էր գտնվում ուսումնակազմավորիչ կետը, որտեղ բռնությամբ ստեղծվել էին հայ ռազմագերիների գումարտակներ։ Կազմակերպության ղեկավարների առջև բացվեց նրանց Պուլավի ուղարկելու հեռանկար։

Պայքարի ո՞ր ուղին ընտրել։ Բյուրոյում բախվեցին երկու հակադիր կարծիքներ։ Ոմանք գտնում էին, որ անհրաժեշտ է ոչ մեծ խմբերով կազմակերպել փախուստ և բացառում էին ընդհատակայինների գտնվելը թշնամու ստեղծած ստորաբաժանումներում։ «Մենք չենք կարող կրել թշնամու համազգեստը։ Լավ է մահը, քան այդպիսի խայտառակությունը»,— ասում էին նրանք։ Այդ տեսակետին վճռականորեն համաձայն չէին Յաղջյանը, Վարդանյանը և Կարապետյանը։ Նրանք վկայակոչում էին բազմաթիվ փաստեր, երբ բոլշևիկները տակտիկական նկատառումներով հնարավոր էին համարում իրենց մասնակցությունը նույնիսկ խիստ ռեակցիոն կազմակերպություններին։ Ի վերջո, հաղթեց այդ տեսակետը։

Պուլավիում սկսվեց ՀԸՀԿ-ի գործունեության նոր փուլ։ Ընդհատակայինները, լայնորեն օգտագործելով անլեգալ գործելաձևի զինանոցը, հրամանատարական պաշտոններ զբաղեցրին կազմավորվող գումարտակներում և եռանդով ձեռնամուխ եղան ապստամբության նախապատրաստմանն ու պարտիզանների կողմն անցնելուն։

Բոլոր գումարտակներում և բանվորական անձնախմբերում, որոնք ուղարկվում էին այլ շրջաններ, ստեղծվեցին ընդհատակայինների բյուրոներ և խմբեր։ Դրանք նախապատրաստված էին ինքնուրույն գործողությունների։ Նրանց առջև խնդիր էր դրված տեղում կապեր հաստատել պարտիզանների հետ և համատեղ ակտիվ գործողություններ ծավալել ֆաշիստների դեմ։

ՀԸՀԿ-ի բյուրոն կենտրոնական դարձնելու միտքը ծագել էր դեռևս Բենյամինովոյում։ Պուլավիում այն դարձավ այդպիսին։ Նրա երկու անդամները՝ Ղազարյանը և Մինասյանը, գտնվում էին Դեմբլինում։ Նրանց հետ մշտական կապ էին պահպանում։ Ընդհատակյա կազմակերպության ազդեցությունը դուրս էր եկել Պուլավիի և Դեմբլինի ճամբարների սահմաններից։ Այն դարձել էր հստակ գործող և ներդաշնակ մեխանիզմ։

1942 թ. հոկտեմբերին Յաղջյանին և Տեր-Գրիգորյանին հաջողվեց կապ հաստատել լեհական դիմադրության շարժման մասնակից, բուժակ Ելենա Բովիոնիկի (Լելյա) հետ։ Քիչ ուշ Վարդանյանը և Կարապետյանը կապերի մեջ



մտան պարտիզանական ջոկատի հրամանատար Վետչիկի հետ։ Սովետական և լեհական ընդհատակայինների առաջին հանդիպումը կայացավ Բովիոնիկի բնակարանում, որտեղ պայմանավորվեցին համատեղ ելույթի մասին։

Սակայն թշնամին քնած չէր։ 1943 թ. փետրվարին Միշա Մարկոսյանի վրա (իսկականը՝ Իոսիֆ Կոգան)*, որը մտնում էր Բենիամինովոյի կազմակերպության միջուկի մեջ, կախվեց ձերբակալության և գնդակահարության վտանգը։ Ինչ-որ մեկը մատնել էր, որ նա հրեա է։ Ստեփան Յաղջյանն անհապաղ կազմակերպեց նրա փախուստը։ Միայն դա կարող էր փրկել Կոգանին։

Մարկոսյան-Կոգանի փախուստը տասնհինգ մարդու ձերբակալության առիթ ծառայեց։ Նրանց թվում էին բյուրոյի երեք անդամները՝ Յաղջյանը, Վարդանյանը և Կարապետյանը։ Գեստապոյականները քսան օր հարցաքննում էին ձերբակալվածներին։ Ընդհատակայինները դիմացան այդ ծանր փորձությանը։ Նրանք մնացին անհողդողդ և ընդհատակյա կազմակերպության գոյությունը չբացահայտվեց։

Ֆաշիստական դատարանը դատապարտեց ութ մարդու, այդ թվում Վահան Վարդանյանին և Ավետիս Կարապետյանին։ Յաղջյանի և ուրիշ վեց ձերբակալվածների դեմ հանցանշաններ չկային և նրանց ազատեցին։

Յաղջյանը չէր հասցրել դուրս գալ բանտարկությունից, երբ նրան սկսեց նոր վտանգ սպառնալ։ Նրա անունը մտցվել էր մահվան ճամբար ուղարկվողների ցուցակի մեջ։ Ամենավերջին պահին նրան փրկում է գերմանական ֆելդֆեբելը, որի հետ նա մոտիկ փոխհարաբերությունների մեջ էր։

ՀԸՀԿ-ն կրեց էական կորուստներ։ Շատ ընդհատակայիններ ենթարկվեցին ռեպրեսիաների։ Պուլավիի կազմակերպության ղեկավարներից մնացել էր միայն Յաղջյանը։ Մի քանի ստորաբաժանումներում հրամկազմը, որը կոմպլեկտավորված էր հիմնականում կազմակերպության անդամներից, փոխվեց։ Սակայն ընդհատակյա կազմակերպությունն արագ ուշքի եկավ ստացած հարվածից։ Թուլացած օղակները ամրապնդվեցին նաև ի հաշիվ ՀԸՀԿ-ի նոր անդամների, ուժեղացավ նախապատրաստությունը՝ լեհական հայրենասերների հետ համատեղ հանդես գալու համար։

1943 թ. ամռանը Յաղջյանը կենտրոնական բյուրոյի կազմում մտցրեց Բարդուղ Պետրոսյանին և Լևոն Տիտանյանին։ Շուտով Պուլավիում, Դեմբլինի ճամբարի վերացման կապակցությամբ, հայտնվեցին նաև բյուրոյի երկու անդամներ՝ Ղազարյանը և Մինասյանը։ Այդ ժամանակ Պուլավիում ստեղծված ստորաբաժանումների վերաբերմամբ հիտլերյան հրամանատարության տակտիկայում կատարվեցին փոփոխություններ։ Զախողվելով նրանց Արևելքում օգտագործելու մեջ՝ հիտլերականները որոշեցին այդ ստորաբաժանումներն օգտագործել Արևմուտքում։ 1943 թվականի հոկտեմբերին Պուլավիի ճամբարը չկար, այն տեղափոխեցին Ֆրանսիայի Մանդ բնակավայրը։

Մանդ հասնելով՝ ընդհատակայիններն սկսեցին կապեր որոնել ֆրանսիական հայրենասերների հետ։ Ֆրանսերեն լեզվի իմացությունն օգնեց Յաղջյանին՝ բարեկամություն հաստատել ճամբարում աշխատող հյուսն Անդրի Պոլի հետ։ Նրա միջոցով էլ տեղի ունեցավ Յաղջյանի հանդիպումը Լոզեր դեպարտամենտի դիմադրության շարժման ղեկավար Բուրիոնի հետ։ Մի քանի հանդիպումներից հետո նրանք մշակեցին համատեղ ելույթի պլանը։ Բուրիոնը դիմադրության շարժման հրամանատարության անունից պահանջում էր ձեռնպահ մնալ ամեն տեսակի չհամաձայնեցված գործողություններից և կանխել փախուստները։ Դիմադրության շարժման հրամանատարությունը նախապատրաստում էր անցումը լայն ռազմական գործողությունների՝ Ֆրանսիայում դաշնակիցների զորքերի ափհանման պահին։

Յաղջյանը հանգամանալից զրույցներ ունեցավ նաև Ֆրանսիայի հարավային գոտու դիմադրության շարժման հրամանատարության՝ Լիոնից եկած ներկայացուցիչների հետ։ Նա մանրամասնորեն պատմեց Մանդի և ուրիշ ճամբարների՝ Ֆրանսիայում գտնվող սովետական ռազմագերիների կազմա-

* Նրա ճակատագրի մասին պատմվում է Բ. Կոլմոգորովի «Նրան կոչում էին Միշա Մարկոսյան» ակնարկում։ «Коммунист», 1983, 9 մայիսի։

կերպությունների գործունեության մասին և հիմնավորեց ֆաշիզմի դեմ մղվող պայքարում նրանց օգտագործելու անհրաժեշտությունը։ Յաղչյանը միաժամանակ հայտնեց Ֆրանսիայի հյուսիսում և Տուլոնից ոչ հեռու տեղավորված հայկական երեք գումարտակների ընդհատակյա կազմակերպությունների խնդիրների մասին և առաջարկեց կապերի մեջ մտնել նրանց հետ։ Ավելի ուշ նա կարողացավ կապեր հաստատել Ֆրանսիայի կոմկուսի հայկական սեկցիայի հետ։

ՀԸՀԿ-ի ջանքերով Մանդի ճամբարը դարձավ դիմադրության ռազմական միավոր։

Լոզեր դեպարտամենտի դիմադրության շարժման ղեկավար կոմիտեի անդամների՝ ճարտարապետ Լիոնեի, գնդապետ Պերտավենի, Մանդի քաղաքագլուխ Մաղելի՝ 1944 թվականի սեպտեմբերի 26-ին ստորագրած փաստաթղթում հաղորդվում էր Բուրիոնի և սովետական հայրենասերների ընդհատակյա կազմակերպության ղեկավար, մայոր Ստեփան Յաղչյանի միջև հաստատված կապերի մասին։ Նրանք շարունակեցին Բուրիոնի սկսած գործը, երբ վերջինս 1944 թ. փետրվարի 28-ին ձերբակալվեց։ Փաստաթղթում նշվում է նաև, որ հայկական ճամբարը «մշտապես գործել է դիմադրության ուժերի հրամանատարության ղեկավարությամբ ու հրամաններով»։

Մանդում Յաղչյանին հաջողվեց դառնալ վերմախտի սպա՝ լեյտենանտ։ Նա գիտակցաբար գնաց դրան, քանի որ սպայական կոչումն ստեղծում էր ընդհատակյա գործունեության առավել բարեհաջող պայմաններ։ Այն իսկապես օգտակար եղավ, բայց ոչ երկար։ Ճամբարի հրամանատարությունը Յաղչյանին մեկուսացնելու նպատակով որոշեց նրան ուղարկել Իտալիա։ Նա կարող էր փախուստի դիմել, սակայն ձեռնպահ մնաց այդ քայլից, որպեսզի ավելորդ կասկածանքի տեղիք չտար, և գնաց Իտալիա։

Շուտով ընդհատակայիններին հայտնի դարձավ, որ կազմվել է ձերբակալման ենթակա սովետական սպաների մի մեծ խմբի ցուցակ։ Հապաղել չէր կարելի։ 1944 թ. հուլիսի 4-ի երեկոյան բյուրոյի անդամների գլխավորությամբ 52 մարդ երկու խմբով հաջողությամբ փախուստի են դիմում։ Այնուհետև փախչում են և հայրենասերների ուրիշ խմբեր։ Նրանցից կազմավորվում են պարտիզանական խմբեր, որոնց հրամանատարներն էին Բարդուղ Պետրոսյանը և Վահան Օհանյանը։

Մանդի ճամբարում ռեպրեսիաներն ուժեղացան։ Գնդակահարվեցին ընդհատակայիններ Գեորգի Հակոբջանյանը և Հակոբ Հակոբյանը։ Օգոստոսի սկզբներին հիտլերականները որոշեցին մնացած մի քանի հարյուր գերիներին ուժեղացված պահակախմբով տեղափոխել Գերմանիա։ Վիլֆոր քաղաքում վրա հասան սովետական ու ֆրանսիական պարտիզանները, վճռական գործողությամբ վերացրին պահակախումբը, ֆաշիստական գերությունից ազատեցին սովետական մարդկանց, որոնք ներգրավվեցին պարտիզանական շարժման մեջ։

ՀԸՀԿ-ի կենտրոնական բյուրոն իր գործունեությունն ավարտեց Ֆրանսիայում առաջին սովետական պարտիզանական գնդի ստեղծումով՝ ընդհատակայինների կազմակերպած ջոկատների բազայի վրա։ Բյուրոյի անդամներից կազմավորվեց գնդի հրամանատարությունը։ Հրամանատար դարձավ Ղազարյանը, շտաբի պետ՝ Մինասյանը, հրամանատարի տեղակալ՝ Պետրոսյանը, կոմիսար՝ Տիտանյանը։

Յաղչյանը չկար ընկերների մեջ։ Նրա վրա նորից կախվել էր մահվան սպառնալիքը։ Ընդհատակայինների առաջին խմբերի փախուստից հետո գեստապոն շտապ ետ պահանջեց Յաղչյանին Իտալիայից։ Նա գիտեր, թե ինչ է սպասում իրեն։ Ճանապարհին նրան հաջողվեց փախչել։ Նա հայտնվեց Ֆրանսիայի Բուշ-Դյուրոնի դեպարտամենտում, որտեղ ակտիվ մասնակցություն ցույց տվեց հիտլերականների դեմ մղվող ռազմական գործողություններին։ Ավելի ուշ նա միացավ իր ընկերներին և դարձավ գնդի հրամանատարի տեղակալ։

Գունդն ակտիվորեն մասնակցեց Հար և Լոզեր դեպարտամենտների ազա-



տագրմանը։ Ֆրանսիական հրամանատարությունը բարձր գնահատեց սովետական հայրենասերների սխրագործությունները։ Գունդը և նրա առաջին գումարտակը պարգևատրվեցին ռազմական դրոշներով և Ռազմական խաչի շքանշանով՝ Արծաթե աստղով։ Ֆրանսիական շքանշաններով ու մեդալներով նշվեցին նաև բազմաթիվ հայրենասերների սխրագործություններ։

Գնդի ծառայությունը եղավ և սովետական քաղաքացիների հայրենադարձության կազմակերպումը Ֆրանսիայից։ Չնայած եղած դժվարություններին՝ ստեղծվեց յոթ հավաքակետ և ապահովվեց 30 հազարից ավելի մարդու վերադարձը Սովետական Միություն։

Հաջողությամբ կատարեցին իրենց հիմնական խնդիրը նաև գումարտակների ընդհատակյա բյուրոներն ու խմբերը։ Պուլավիի ճամբարում կազմավորված և ֆաշիստների կողմից 1942 թ. աշնանը Մայկոպի շրջան նետված առաջին գումարտակի ապստամբության նախապատրաստությունը ղեկավարում էր մայոր Ենոք Խաչատրյանը, որին Պուլավի էր ուղարկել Յաղչյանը դեռևս Բենյամինովոյի ճամբարից։ Այն պահին, երբ արդեն նշանակված էր ելույթի օրը, հիտլերականները ձերբակալեցին սպա-ընդհատակայինների մի մեծ խումբ, այդ թվում Խաչատրյանին։ Գումարտակը կազմացրվեց, շատ հայրենասերներ հայտնվեցին պատժական ճամբարներում, իսկ մի քանիսին հաջողվեց փախչել պարտիզանների մոտ և միանալ նրանց։ Հերոսաբար զոհվեցին Խաչատրյանը և մի քանի ուրիշ հայրենասերներ։ Գազանային խոշտանգումներից հետո գեստապոյականները գնդակահարեցին նրանց Մայկոպի գերեզմանոցում 1942 թ. նոյեմբերին։

1943 թ. սեպտեմբերին Հոլանդիա ուղարկած գումարտակի ճակատագիրը մոտավորապես նույնն էր, ինչ որ առաջինինը։ Ընդհատակյա կազմակերպությունը, որը ղեկավարում էր Պանդուխտ Մելոյանը, սերտ համագործակցության մեջ մտավ հոլանդական դիմադրության հետ։ 1944 թ. գումարտակը կազմացրեցին, նրա զգալի մասն ընկավ պատժիչ ճամբարներ և բանտեր, իսկ ընդհատակայինների խումբը գնդակահարվեց։

Ուկրաինա, Ժիտոմիրի շրջակայք ուղարկված գումարտակը 1943 թ. սեպտեմբերին ապստամբեց։ Այն գլխավորեցին Արամայիս Օսիպյանը, Արամ Ազոյանը և ուրիշ ընդհատակայիններ։ Գումարտակի հիմնական մասը միացավ պարտիզաններին։

Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր Մ. Ի. Նաումովի միավորումում ստեղծվեց հայկական պարտիզանական ջոկատ՝ բաղկացած 360 մարդուց։ Ջոկատի հրամանատար դարձավ Օսիպյանը, որը մտել էր ՀԸՀԿ-ի կազմի մեջ դեռևս Բենյամինովոյի ճամբարում։ Ջոկատը մասնակցեց միավորման երկու հազար կիլոմետրանոց երկու մարտարշավին՝ գտնվելով նրա ավանգարդում։ Նրա ռազմական ուղու մասին պատմում է գեներալ Նաումովը «Արևմըտյան մարտարշավ» գրքում։

Երեք գումարտակ, որից մեկը գտնվում էր Ֆրանսիայի հյուսիսում, իսկ երկուսը՝ Տուլոնի շրջանում, 1944 թ. ամռանը ապստամբեցին և ակտիվորեն մասնակցեցին Ֆրանսիայի ազատագրմանը ֆաշիստական օկուպանտներից։ Ապստամբությունը ղեկավարեցին Սերգեյ Բագրատյանը, Ռուբեն Մանուկյանը, Արամ Ավետիսյանը և ուրիշ սպա-ընդհատակայիններ։

ՀԸՀԿ-ի անդամները գործում էին Հարավսլավիայում, Հունաստանում և ուրիշ այլ երկրներում։ Վահան Վարդանյանը և Արտեմ Բաբայանը, որոնք դատապարտված էին ֆաշիստական դատարանի կողմից, փախուստի դիմեցին և դարձան պարտիզանական ջոկատների հրամանատարներ Չեխոսլովակիայում։

ՀԸՀԿ-ն գլխավոր խնդիրը լուծեց։ Նա ոչ միայն ձախողեց ռազմագերի հայերի օգտագործումը թշնամու կողմից, այլև նրանց վերածեց ռազմական ուժի, որը զգալի վնաս հասցրեց ֆաշիստներին։

Ընդհատակյա կազմակերպության հաջողությունը պայմանավորվում է երկու գործոնով։ Առաջին.— հայ ռազմիկների հայրենասիրությունը։ Դրա արմատները հասնում են դարերի խորքը և կապված է հայ ժողովրդի պատմական ճակատագրի հետ։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական իշ-

խանությունը հայ ժողովրդին տվեցին ոչ միայն պետականություն և ազատություն, այլև փրկեցին նրան ֆիզիկական ոչնչացումից, որը կազմակերպել էին թուրքական ջարդարարները միլիտարիստական Գերմանիայի օգնությամբ։ Բենյամինովյի ճամբարում թուրքական սպաների ու կրոնական գործիչների հայտնվելը և ճամբարում հակասովետական, հակառուսական տրամադրություն առաջացնելու նրանց ջանքերը հայ գերիների հիշողության մեջ վերակենդանացնում էին 1915 թ. ողբերգությունը։ Նրանցից շատերը թշնամու գազանությունը զգացել էին երկու անգամ՝ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին և ահա այստեղ։ Բնականաբար, նրանք իրենց սրբազան պարտքն էին համարում մինչև վերջ մարտնչել ֆաշիզմի դեմ։ Երկրորդ.— ՀԸՀԿ-ն մշակել էր պայքարի ճիշտ ձևեր ու մեթոդներ։ Դրանում էր ընդհատակյա կազմակերպության ղեկավարների ծառայությունը։ «Մենք պատկանում ենք նրանց, ովքեր մեկ անգամ են ընտրում իրենց հավատը». այսպես արտահայտեց Ստեփան Յաղջյանը ՀԸՀԿ-ի անդամների հավատամքը։

Իր իդեալներին հավատարմության օրինակ ցույց տվեց ինքը՝ ՀԸՀԿ-ի ղեկավար Ստեփան Յաղջյանը, որը, երկու տարի գլխավորելով ընդհատակյա կազմակերպությունը, ամեն օր վտանգում էր կյանքը և խիզախություն գործում։ Այդպիսի հավատ դրսևորում էին և ուրիշ ընդհատակայիններ։

ՀԸՀԿ-ի կենտրոնական բյուրոյի անդամ Ավետիս Կարապետյանը, ունենալով ինը վերք, դատված լինելով գնդակահարության Պուլավիում, խցի պատին իր արյունով գրել էր. «Հայե՛ր, Հայաստանը կմնա ազատ հանրապետություն միայն սովետական կարգերի միջոցով։ Պայքարեցեք սովետական իշխանության համար»։ Ընկերներին հաջողվում է փրկել նրա կյանքը։ Գնդակահարությունը փոխարինեցին տասներկուամյա բանտարկությամբ։ Բանտարկյալների շրջանում հակաֆաշիստական պրոպագանդա մղելու համար նրան նետեցին Բրանդենբուրգի բանտի մենախուցը, և ջարդված կողերով, բաց վերքերով, ձեռնակապանքով նա երեք ամիս ամեն օր սպասում էր մահվճռի։ Անցնելով 13 աքսորաբանտերի դժոխքով՝ Ավետիս Կարապետյանը ողջ մնաց։ Ինչպիսի՜ հոգեկան ուժ, ինչպիսի՜ կամք էր պետք, որպեսզի դիմանար այդ ամենին։

Բրեստի ամրոցի և Սևաստոպոլի պաշտպանության, ընդհատակյա և ֆրանսիական դիմադրության ակտիվ մասնակից Սոս Նուրիջանյանը երկու անգամ դատապարտվել է գնդակահարության և երկու անգամ, խոշտանգումներից ու սովից տանջահար, հազիվ կենդանի փախուստի է դիմել, որպեսզի նորից կանգնի մարտական շարքում։

Այդպիսի անսովոր խիզախության օրինակներով հարուստ է ՀԸՀԿ-ի պատմությունը։

Ֆաշիզմի հետ մահացու գոտեմարտում ՀԸՀԿ-ն կրեց լուրջ կորուստներ։ Ընդհատակայինների մի մասը գնդակահարվեց, է՛լ ավելի մեծ մասը՝ հարյուրավոր հայրենասերներ, զոհվեցին գեստապոյի զնդաններում, պատժիչ ճամբարներում... Շատերը հերոսի մասով ընկան մարտադաշտում։ Միայն Նաումովի միավորման Արևմտյան մարտարշավի ընթացքում հայկական պարտիզանական ջոկատի 164 կոմունիստներից և կոմերիտականներից 74-ը սպանվեցին (Նաումով, Արևմտյան մարտարշավ, էջ 251)։

ՀԸՀԿ-ի անդամների, այդ թվում և նրա ղեկավար Ստեփան Յաղջյանի ծառայությունները նշվել են Սովետական Միության, Ֆրանսիայի և այլ երկրների մարտական շատ շքանշաններով ու մեդալներով։ Յաղջյանին հանձնել են «ՍՄԿԿ-ում գտնվելու 50 տարին» պատվավոր նշան, որը նա համարում է ամենաբարձր պարգևը։

ՀԸՀԿ-ի սխրագործությունը վառ ու անմոռաց էջ է Հայրենական պատերազմի և Եվրոպական դիմադրության պատմության մեջ, սոցիալիստական հայրենիքին ծառայելու օրինակ։

**Մ. ԵՊԻՍԿՈՊՈՍՅԱՆ**
**Մոսկվա**

# ԽԻԶԱԽ ՖՈՏՈԺՈՒՌՆԱԼԻՍՏԸ

ՔԱՌԱՍՈՒՆ ՌԱԶՄԱՃԱԿԱՏԱՅԻՆ լրագրողների, ֆոտոթղթակիցների և կինոօպերատորների անուններ են ամփոփված մարմարե այն հուշատախտակին, որն այսօր էլ կախված է Մոսկվայում, ժուռնալիստների կենտրոնական տան շքամուտքին։ Քառասուն խիզախ ժուռնալիստներ, որոնք Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական քաջարի զինվորների հետ միասին մարտնչեցին և ապահովեցին մեր մեծ հաղթանակը։

...Ռազմաճակատային ֆոտոթղթակից, կինօպերատոր։ Նրանք կինոկամերայով կամ լուսանկարչական ապարատով զինված մարտիկներ էին։ Այդ նրանց աչքերով ենք մենք հիմա դիտում մեծ Հայրենականի հերոսապատման բազում կենդանի դրվագներ։ Պատերազմի տարիներին օրվա թերթերի անհամբեր սպասող ընթերցողը լուսանկարներում տեսնում էր թշնամու ջախջախված զորքի մնացորդների պատկերը և լցվում էր հաղթանակի հավատով։ Թերթերում տպագրված հավաստի ֆոտոփաստաթղթերը մեկ այլ դեպքում նպաստում էին ի դերև հանելու գեբելսյան պրոպագանդայի պոզավոր ստերը։



Հայրենական մեծ պատերազմի տարիներին ինչպես կենտրոնական թերթերի՝ «Պրավդայի», «Իզվեստիայի», «Կրասնայա Զվեզդայի», «Կրասնոյե Զնամյայի», այնպես էլ մեր հանրապետության «Սովետական Հայաստանի» ու «Կոմունիստի» էջերում կարելի էր հաճախ հանդիպել մեր զորքերի ռազմական գործողություններն ու առանձին ռազմիկների սխրագործություններն արտացոլող լուսանկարների՝ «Ս. Կաֆաֆյան, մեր սեփական թղթակից» ստորագրությամբ։ Ժամանակի համար այնքա՜ն անհրաժեշտ այդ լուսանկարներից ու պարզաբանող կից տեքստերից վառոդի հոտ էր փչում։

Իսկ ո՞վ է Ս. Կաֆաֆյանը։ Չնայած որ Հայաստանի թերթերում նա համարվել է «մեր սեփական թղթակից», այնուամենայնիվ, խմբագրություններում սկզբնական շրջանում նրան ճանաչողներ չեղան։ Հին աշխատողները լսել էին այդպիսի ազգանուն, սակայն ոչ ոք նրան չէր տեսել և ոչինչ չգիտեր նրա ճակատագրի մասին։

Անցած գարնանը արձակուրդս անցկացնում էի Ժելեզնովոդսկի Ֆ. Ձերժինսկու անվան առողջարանում։ Այնտեղ ծանոթացա պահեստի գվարդիայի գնդապետ, 16-րդ ավիացիոն բանակի թերթի նախկին խմբագիր Վլադիմիր Իվանովիչ Ծաշկինի հետ։ Ահա թե ինչ պատմեց նա մեր խիզախ հայրենակցի մասին։

— Հայրենական մեծ պատերազմի տարիներին ինձ բախտ վիճակվեց աշխատելու նաև ֆոտոթղթակից Սուրեն Կաֆաֆյանի հետ։ Նրա լուսանկարները զետեղվում էին ոչ միայն մեր ավիացիոն ճակատային, այլև «Պրավդա»,

«Իզվեստիա», «Կրասնայա զվեզդա» թերթերի էջերում: Սուրենն ավելի հաճախ թռիչքներ էր կատարում «Իլ—2» գրոհող ինքնաթիռի հրաձիգ-ռադիստի խցիկում և օդում կատարում նրա պարտականությունները՝ հետևում, հարվածում էր թշնամու գրոհող կործանիչ ինքնաթիռներն ու միաժամանակ լուսանկարում այդ տեսարանները և դրանք տպագրում թերթերում ու ամսագրերում: Բաց արեք պատերազմի տարիների կենտրոնական լրագրերի ու ամսագրերի հավաքածուները: Եթե տեսնեք կարմրաաստղանի ինքնաթիռի թևը, իսկ նրա ներքևում, գետնի վրա՝ սև-սպիտակին տվող պայթյունների ցայտաղբյուրներ, վառվող բաքերից ծուխն ու բոցը, ապա կարող եք չկասկածել, որ այդ լուսանկարը մարտական թռիչքի դուրս եկած ինքնաթիռի խցիկից արել է Սուրեն Կաֆաֆյանը: Մի անգամ նա նույնիսկ «երկնքից իր հետ բերեց Մեսսերշմիդտ», որտեղ պարզ երևում էր թշնամու օդաչուն, նույնիսկ վախից նրա այլայլված դեմքը, որովհետև ինքնաթիռը ծխում ու այրվում էր և ուր որ է՝ պետք է պայթեր:

Նա «Իլ—2» և «ՊԵ—2» խոյընթաց ռմբակոծիչների վրա կատարել է 50-ից ավելի մարտական թռիչք, կռվել օդում որպես անվախ հրաձիգ և աշխատել որպես հմուտ փոտոթղթակից, արժանացել մարտական շքանշանների ու ավիացիոն դիվիզիաների հրամանատարների խրախուսանքներին:

Ես մի քանի անգամ ճակատային օդանավակայանում տեսել եմ, թե նա ինչպիսի դըժվարությամբ էր մտնում իր համար բավական նեղ հրաձիգ-ռադիստի խցիկը, վզին կախված անփոխարինելի «Լեյկայի» և «Ֆեդի» հետ միասին, և իսկույն հարմարեցնում իր մոտ գտնվող մեծ տրամաչափի ավիացիոն «բերեզինա» գնդացիրը: Թռչում էր, շնորհակալություն հայտնում օդաչուին և լայն քայլերով շտապում թռիչքային դաշտով, մտածելով այժմ բոլորովին ուրիշ բանի մասին՝ ինչպես շուտափույթ հասնել Մոսկվա՝ խմբագրություն և լուսանկարները հանձնել տպագրության:

Մենք բոլորս զարմացած էինք Սուրենի դիմացկունության ու համառության վրա: Բոլոր ճակատային ավիացիոն կորպուսներում, դիվիզիաներում և գնդերում նրան ճանաչում էին որպես օդաչուների ամենասիրելի անձնավորություն: Օդաչուների ընտանիքում նա հարազատ էլ բոլորին: Եվ զոհվեց նա, ինչպես նահատակվում են քաջարի օդաչուները, հրամանատարության կարևոր առաջադրանքները կատարելիս: Սուրեն Կաֆաֆյանի իմաստալից կյանքը կտրվեց օդում՝ գրոհի ժամանակ:

Մոսկվայում՝ ՏԱՍՍ-ի արխիվում, հայտնաբերվեց չստացած հոնորարների հաշվապահական մի մեծ ցուցակ... Ժուռնալիստ ընկերների սրտում դրոշմված անմոռաց ու բարի անուն: Հայաստանում գտնվեցին նրան ճանաչողներ՝ հայտնի լուսանկարիչներ Վ. Ամալյանն ու Վ. Սևոյանը: Առաջինը Կաֆաֆյանի աշակերտն է, երկրորդը՝ ռազմաճակատում Ս. Կաֆաֆյանի հետ թողել է ճակատի գիծ՝ նկարահանումների:

Լուսանկարչական արվեստի տաղանդավոր վարպետ Սուրեն Կաֆաֆյանն ստեղծեց լուսանկարիչների ուրույն դպրոց իր բազմաթիվ հետևորդներով: Ուսումնառության ցանկությունը նրան տարավ Լենինգրադ: Սակայն շուտով, կիսատ թողնելով ուսումը Լենինգրադի պոլիտեխնիկական ինստիտուտում, Սուրենն ընդունվում է Մոսկվայի կինեմատոգրաֆիայի պետական ինստիտուտ: Ի վերջո, գտնելով իր տեղը կյանքում:

Մոսկվայում արվեստագետների շրջանում լայն ճանաչում գտավ նրա ավարտական աշխատանքը՝ ռեժիսոր Վոլչեկի հետ նկարահանած «Պիշկա» ֆիլմը: Այն ցուցադրվեց երկրի բոլոր ծայրերում՝ նրան բերելով երկրի լավագույն երիտասարդ օպերատորներից մեկի համբավ:

Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրերից ռազմաճակատ մեկնած ժուռնալիստների մեջ էր նաև Սուրեն Կաֆաֆյանը, որը, անբաժան իր կինո և լուսանկարչական ապարատներից, շատ ուրիշների հետ լծվեց դժվարին ու պատասխանատու գործի:

Սուրեն Կաֆաֆյանը լուսանկարահանումներ էր կատարում թշնամու հրետանու կրակի տակ, ռազմանավի տախտակամածից, հատկապես մարտական առաջադրանք կատարող ինքնաթիռից:

Նա չէր պատկերում մարտական առաջադրանքի թռչող կամ օդանավակայան վերադարձող ինքնաթիռներ, նա լուսանկարում էր մարտի միջադեպեր: Ինչպես վկայում են ինձ ծանոթ բազում վետերան օդաչուներ, Սուրեն Կաֆաֆյանը գիշերային մարտերի ռմբակոծումների նկարահանման վարպետ էր: Նա նկարում էր խոյահարող ինքնաթիռից: Իսկ հաճախ էլ կարևոր ռազմական առաջադրանքի էր գնում՝ անձամբ նստելով «Իլ—2» գրոհող ինքնաթիռի հրաձիգ-ռադիստի խցիկում, մեծ տրամաչափի ավիացիոն գնդացրի մոտ: Ահա թե ինչպես է հիշում Սուրեն Կաֆաֆյանին Հայրենական մեծ պատերազմի ակտիվ մասնակից, երևանցի լուսանկարիչ Վարազդատ Սևոյանը.

— Սուրեն Կաֆաֆյանի հետ ես ծանոթացա 1942 թվականին, Լենինգրադում, ուր տեղի էին ունենում օդային լարված մարտեր: Կաֆաֆյանն ինձ առաջարկեց իր հետ միասին օդ բարձրանալ: Առավոտյան ճիշտ նշանակված ժամին ներկայացա օդանավակայան: Լուսանկարչական ապարատներով զինված՝ նա պատրաստ էր թռիչքի: Ես առաջին անգամ էի այդպիսի հույժ կարևոր հանձնարարություն կատարելու և մտածում էի, թե արդյոք կարո՞ղ եմ Կաֆաֆյանի դժվարին հանձնարարությունը կատարել խոյընթաց «Պետլյակով երկու» ռմբակոծիչով: Օդ բարձրանալուց առաջ նա իր լուսանկարչական ապարատներից մեկը տվեց ինձ:

Մոտ 15 րոպե տեղի էր ունենում օդային մարտ գերմանական «Մեսսերշմիդտների» հետ: Կաֆաֆյանը, կիսով չափ բարձրացած, հրաձիգ-ռադիստի խցիկից լուսանկարում էր և համոզված էր, որ կորսա հաջող պահեր: Եվ, իսկապես, վայրէջք կատարելուց հետո ժապավենը պատրաստ էր: Գոհ առաջադրանքը հաջող կատարելու համար՝ անմիջապես պատրաստի ժապավենն ուղարկում էր Մոսկվա, իսկ ինքը հաջորդ օրը մեկնում նոր առաջադրանքներ կատարելու:

Ռազմաօդային ուժերի գլխավոր հրամանատարությունը և քաղվարչությունը բարձր են գնահատել Սուրեն Կաֆաֆյանի ծառայությունները: Նա բազմիցս արժանացել է կառավարական բարձր պարգևների, այդ թվում մարտական Կարմիր դրոշի, երկու Կարմիր աստղի շքանշանների և բազմաթիվ մեդալների:

Սուրեն Կաֆաֆյանը նկարահանեց գերմանացիների ջախջախումը Մոսկվայի տակ ու Ստալինգրադում, Ղրիմի ազատագրումն ու մարտերը հանուն Կովկասի: Ծանր ռմբակոծիչ ինքնաթիռում, հեռավոր մի կարևոր մարտական առաջադրանք կատարելիս, 1944 թ. դեկտեմբերին նա այլևս տուն չվերադարձավ: Նա Հայրենական մեծ պատերազմի հերոսապատումը նկարահանող օպերատորների երկու հարյուր երեսունվեց հոգիանոց բանակից զոհված քառասուն մարտիկներից էր:

Ժուռնալիստների Մոսկվայի կենտրոնական տան պատին դաջված նրա անունը բարի հուշեր է արթնացնում լուսանկարչական արվեստին քաջահմուտ ու խիզախ մարդու, հայրենիքի համար կյանքը նվիրաբերած սովետական օպերատորական դպրոցի փայլուն ներկայացուցչի մասին:

**ԶԱՎԵՆ ՊՈՂՈՍՅԱՆ**

**Պաշտոնաթող գնդապետ, ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ**

### Մեր օրերի մարդիկ

# ԴԵՊՈՒՏԱՏԻ ԱՌԱՋԻՆ ՊԱՏՎԻՐԱՆԸ

**Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ**

ՀԵՇՏ ՈՒ ՀԱՆԳԻՍՏ ԷՐ թվում ինձ Հովհաննես Խաչատրյանի դեպուտատական գործունեության մասին գրելը: Այդպես էի մտածում, քանի որ նրան գիտեի վաղուց. հանրապետական թերթերի էջերում քանիցս պատմել էի Էջմիածնի շրջանի Լենինի անվան պետական տնտեսության անվանի խաղողագործի փառավոր գործերի մասին:

Կուլտուրայի պալատը լեցուն էր մարդկանցով: Դեպուտատի ելույթը ներառնում էր հարցերի լայն շրջանակ, հագեցած էր պետտնտեսության և նրա մարդկանց կյանքի խոր իմացությամբ: Այդպես հասկանալ, խորամուխ լինել հարցերի էության մեջ, կարող է,— մտածեցի ես,— հավանաբար, միայն նրա ճակատագրի մարդը:

Հայրը չվերադարձավ ռազմի դաշտից, և գյուղական ուսուցչուհու որդին վաղ սկսեց տքնել: Գյուղական գրադարանավար էր, բայց հետո, ինչպես պապը և հայրը, ժառանգական հողագործ դարձավ, սկսեց խաղող աճեցնել: Բաց չէր թողնում առիթը՝ խորհրդակցելու փորձառու խաղողագործների հետ, նրանցից իմանալու նուրբ ու քմահաճ վազի խնամքի գաղտնիքները: Համառությունն ու ջանքերը, կոլեկտիվին օգտակար լինելու ցանկությունն ու աշխատանքը կատարելագործելու ձգտումը աննկատ չմնացին ավագ ընկերներից: Հովհաննեսը 1963-ին ընդունվեց ՍՄԿԿ շարքերը: Իսկ երեք տարի անց երիտասարդ կոմունիստը այգեգործական բրիգադի գլուխ կանգնեց: Այդ օրվանից Խաչատրյանի ղեկավարած կոլեկտիվը տոն է տալիս Էջմիածնի շրջանի տնտեսությունների այգեգործական բրիգադների սոցիալիստական մրցությանը:

...Ժամանակ առ ժամանակ, փոքր-ինչ դադար առնելով, դեպուտատը նայում էր դահլիճին, իրեն բարձր վստահություն ցույց տված ընտրողների ծանոթ դեմքերին: Հուզմունքը լքեց նրան: Պատմելով հարազատ տնտեսության զարգացման հեռանկարների մասին՝ ընրանց ուշադրությունը սևեռում էր չլուծված պրոբլեմների վրա: Ես հայացքով հանդիպեցի աթոռակից հարևանիս, ամուր թեքված, կոպիտ կոշտուկապատ ձեռքերով մի մարդու: Հանձին ինձ գտնելով զրուցակցի՝ նա վստահորեն կիսվեց.

— Լավն է մեր դեպուտատը, արժանի է այդ բարձր կոչմանը: Պետականորեն է մտածում մեր Հովհաննեսը:

— Իսկ ինչո՞վ է հասցրել դրսևորել իրեն ձեր ընտրյալը,— հարցրի նրան:

— Հարցնում ես՝ ինչո՞վ է դրսևորել իրեն մեր ընտրյալը,— ասես վրդովված ու զարմացած ինձ նայեց զրուցակիցս:— Բարի եղիր, ասել ինձ, ո՞ւմ նախաձեռնությամբ բարեկարգվեց մեր բակի տարածքը, ո՞վ օգնեց Սվերդլովի փողոցի ասֆալտապատմանը, ի՞նչ գնով գլուխ բերեց ինը արտեզյան ջրհորի հարցի լուծումը, որով կյանք ստացավ նրա իսկ ջանքերով յուրացված մեռյալ քարքարոտ զանգվածը: Ավելին կասեմ. նա մեր տնտեսության մեխանիզատորների հետ միասին ստեղծեց հողը պարարտանյութ մտցնելու մեքենա: Նրա լավ գործերի բարի հետքերը նկատելի են ամենուր, մեր ամենօրյա կյանքի մեծ ու փոքր գործերում,— ամփոփեց իր խոսքը նա:

Իր կատարած գործերի մասին Խաչատրյանը հրաժարվեց պատմել: Ես դա կարող էի ընկալել որպես ցուցադրական համեստություն, սակայն, իմանալով նրա բնավորությունը, հասկանում էի, որ նա այդ հարցին մոտենում է այլ կերպ: Կրկին անգամ համոզվեցի, որ չի սիրում իրեն առանձնացնել շրջապատից, դա նրան խորթ է: Հեշտ բան չէ նրան ստիպել պատմել իր մասին, անձնական հաջողությունների մասին: Բայց հաճությամբ և երկար կարող է խոսել աշխատանքային ընկերների մասին, ոգևորվել նրանց արածով, մտքեր փոխանակել պետական տնտեսության գործերի շուրջ:

Քաջատեղյակ լինելով նրա բնավորությանը՝



հետագա հանդիպումների ժամանակ չշոշափեցի ինձ հետաքրքրող թեման, սակայն տեսադաշտից բաց չթողեցի նրա հասարակական գործունեության այդ կողմը: Խաչատրյանի դեպուտատական պարտականությունների կատարման վերաբերյալ նոր փաստերով ծոցատետրս լրացնելուն օգնեցին զրույցները նրա հետ կողք-կողքի աշխատող հողագործների, պետտնտեսության ղեկավարների, քաղաքի ու շրջանի կուսակցական և սովետական աշխատողների, օկրուգի ընտրողների հետ:

Իր ջանքերի մեծ մասը դեպուտատ Հովհաննես Խաչատրյանը գործադրում է «տեղական» նշանակության հարցերի լուծման և ընտրողների անձնական խնդրանքների կատարման վրա: Հաջողությամբ լուծված հարցերի թվին նա կարող է դասել էջմիածինցիների տասնյակ ընտանիքների բնակարանամուտները: Նրա միջամտությամբ օկրուգի 15 ընտանիքներ դարձել են կոոպերատիվ բնակարանների **տերեր:**

Ինչպիսի՜ շնորհակալությամբ էր պատմում իր դեպուտատի մասին մի ընտրող կին, որի օջախին նա վերադարձրել է ընտանեկան երջանկությունը: Իսկ բանն այսպես է եղել: Հարազատների հորդորով ամուսինը պատրաստվել էր վաստակի համար մեկնել հեռավոր վայրեր:

— Մարդիկ խորհուրդ տվեցին գնալ մեր դեպուտատի մոտ, կիսվել նրա հետ ինձ հուզող հարցի կապակցությամբ,— հիշում է կինը:— Պատմում էին, որ շատերին է օգնել դուրս գալու դժվարին վիճակից: Խաչատրյանի մասին լավ բաներ էի լսել նաև նախկինում: Գնացի նրա մոտ, ամեն ինչ պատմեցի, ինչպես որ կար: Ժլատ էր խոսքի մեջ, բայց լսեց ուշադիր, հանգստացրեց, խոստացավ ամեն ինչ անել ուժերի ներածին չափով: Չգիտեմ ինչպիսի խոսակցություն եղավ Խաչատրյանի և ամուսնուս միջև, բայց այդ դեպքից հետո մեր ընտանիքում հանգստություն տիրեց: Շատ շընորհակալություն նրան իմ և երեխաներիս կողմից: Ամուսինս գնաց պետական տնտեսությունում աշխատելու, այնտեղ, որտեղ բրիգադավար է մեր դեպուտատը: Լավ վաստակում է, առաջավորների մեջ է: Համոզված եմ, որ ոչ միայն խոսքով, այլև իր հեղինակությամբ դեպուտատը կարողացավ ներազդել ամուսնուս վրա:

Մարդ ճանաչման արժանանում է ոչ միանգամից, այն նվաճում է տարիների ընթացքում, հասարակության համար կատարած օգտակար լավ գործերով: Հովհաննես Խաչատրյանն այդ իսկ հեղինակությունը ձեռք է բերել այն տարիներին, երբ պետտնտեսության կոմերիտականների ղեկավարն էր, արհկոմի նախագահը, երբ ընկերները նրան ընտրեցին ՀամԼԿԵՄ XV համագումարի պատգամավոր: Մարդիկ նրա նկատմամբ հարգանքով են համակվել իր պարտքը, լինի այն ծառայական, թե հասարակական, բարեխղճորեն կատարելու համար: Հանձնարարված ցանկացած գործը նա անպայման հասցնում է մինչև վերջ, աշխատանքում և կենցաղում խիստ է, առաջին հերթին պահանջում է իրենից, դրա համար էլ, որպես կանոն, խստապահանջ է ուրիշների նկատմամբ: Բոլորը, ովքեր գիտեն Խաչատրյանին, արտահայտվում են նրա մասին որպես ազնիվ, սկզբունքային կոմունիստի, բարի, զգայուն ընկերոջ: Ուրիշների ուրախությանն ու հոգսերին մասնակից լինելը նա բարձր է դասում փառասիրությունից ու անձնական բարօրությունից: Հովհաննեսի բարեկամներն ու ընկերները նրան վերաբերվում են որպես այնպիսի անձնավորության, որին խորթ են էգոիզմը, անազնվությունը, շահախնդրությունը: Հայտնի է. եթե նա կպչում է գործի, նշանակում է ոչ մի բան չի վրիպի նրա ուշադրությունից, նա ամեն ինչ կհասցնի ավարտին: Անհանգստությունն այդպիսի մարդկանց բնավորության մշտական հատկանիշն է: Ամենևին էլ պատահական չէ, որ Լենինի անվան պետտնտեսության կոմունիստները երկար տարիներ նրան ընտրում են տնտեսության կուսկոմիտեի կազմում, առաջադրում արտադրամասային սկզբնական կուսկազմակերպության քարտուղար: Ահա արդեն 15 տարի է՝ բրիգադավարը տնտեսության ժողովրդական վերահսկողության գլխավորող խմբի նախագահն է: Հովհաննես Խաչատրյանի բնավորության շատ հատկանիշների մասին, համոզված եմ, գիտեին և նրանք, ովքեր 1980 թ. փետըրվարի 24-ին քվեարկել են էջմիածինցի խաղողագործի օգտին՝ հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնում ընտըրվելու համար:

Հովհաննես Խաչատրյանը սովորել է ոչ միայն խաղող աճեցնել և խորամուխ լինել մարդկանց հոգսերի, գործերի, պրոբլեմների մեջ, օգնության հասնել արդարին, այլև սկըզբունքորեն հրաժարվել աջակցելու յուրաքանչյուրին, ով ձգտում է չարաշահել նրա գթասրտությունը, բարյացակամությունը:

Այո՛, եղել է և այդպիսի դեպք: Իր գործունեության վերաբերյալ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը ներկայացրած հաշվետվություններից մեկում դեպուտատը պատմել է, թե ինչպես ստիպված է եղել մերժել ընտրողի խնդրանքը: Եվ ամենևին ոչ այն բանի համար, որ ուժերից վեր էր նրան օգնելը: Ո՛չ: Չցանկացավ խղճի դեմ գործ բռնել, ոտնահարել պետության և ուրիշ մարդ-

կանց շահերը՝ հանուն մանրախնդիր ինքնասիրության և խնդրողի համար բարեխոսող անձի հետ լավ հարաբերության:

Ոչ ոք երբեք չի լսել, որ Հովհաննես Խաչատրյանը դժգոհի դժվարությունից, ժամանակի պակասից: Հողագործի աշխատանքն ինքնին պահանջում է լիակատար փոխհատուցում, մասնագիտական հմտության մշտական խորացում ու կատարելագործում, գիտելիքներ: «Քանի դեռ հողը քրտինքով չես ոռոգել, հոգի չես դրել դրա մեջ, այն առատ բերքով վարձահատույց չի լինի»— նկատում է խաղողագործը:

Այգաբացից առաջ նա արդեն դաշտում է: Իր անզուսպ եռանդով, աշխատելու ցանկությամբ խանդավառում է ուրիշներին, նրանց տանում իր ետևից: № 12 բրիգադին ամրացված երեսուն հեկտարանոց բերքատու զանգվածի ամեն մի վազ զգացել է նրա ձեռքի ջերմությունն ու խնամքը: Հեկտարից 120—150 ցենտներ սաթի պես ողկույզի ստացումը Խաչատրյանի ղեկավարած այգեգործների կոլեկտիվի համար վաղուց է դարձել նորմա: Ամեն մի նորի ու առաջավորի կողմնակից ու ջատագով հողագործը տնտեսությունում առաջիններից մեկը խաղողի հին, թմբային եղանակից անցավ լարային մշակության եղանակին: Սկսեց կիրառել վազերի մշակման և աճեցման առաջավոր տեխնոլոգիա, ակտիվորեն աջակցում է բարձրբերքատու հեռանկարային սորտերի ներդրմանը:

Այն բանից հետո, երբ ուժի մեջ մտան նրա բարձր լիազորությունները՝ դեպուտատի հասարակական աշխատանքը Հովհաննեսից խլում է գրեթե բոլոր երեկոները: Քիչ է պատահում, քան կուզենար, ետաշխատանքային ժամանակն անցկացնել ընտանիքի հետ: Բայց տնեցիները ըմբռնումով են վերաբերվում այն բանին, որին նվիրաբերում է իրեն ընտանիքի գլխավորը աշխատանքից հետո: Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի հեռակայող ուսանողուհի Արմենուհի դուստրը, որն աշխատում է Ջրառատի ֆաբրիկայի լաբորատորիայում, ութերորդ դասարանցի որդին՝ Արմենակը, աշխուժորեն հետաքրքրվում են իրենց հոր դեպուտատական գործունեությամբ: Ինքը՝ դեպուտատը, առիթը բաց չի թողնում՝ հարցնելու երեխաներին ուսման մասին, խոսելու նրանց հետաքրքրող գործերից:

Ընդհանուր առմամբ ջահելների նկատմամբ քառասունչորսամյա հողագործի վերաբերմունքը առանձնահատուկ է: Խստապահանջություն, ուշադրություն և հոգատարություն՝ այս չափանիշներով է ղեկավարվում նա երիտասարդության հետ տարվող աշխատանքում: Նրա բրիգադի նախկին անդամներ, երիտասարդ այգեգործներ Վլադիմիր Մարգարյանը, Սերգեյ Օհանյանը, Վաղինակ Երեմյանը իրենց դաստիարակ-վարպետի երաշխավորությամբ այսօր արդեն իրենք են բրիգադ ղեկավարում տընտեսությունում: Նրանք և շատ ուրիշներ Խաչատրյանի համառ խորհրդով բարձրացնում են իրենց մասնագիտական գիտելիքները գյուղատնտեսական բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում:

...1984-ի ուշ աշունն է: Հովհաննես Խաչատրյանի հետ շրջում ենք ուղղաձիգ շարքերով, լավ խնամված խաղողի այգիները: Իմ զրուցակցի տրամադրությունը բարձր է: Հանրային հողը շռայլորեն բերք է պարգևել: Տընտեսության այգեգործական բոլոր ինը բրիգադները կատարել են ընթացիկ տարվա պետական առաջադրանքներն ու ստանձնած պարտավորությունները: Հատկապես աչքի է ընկել № 12 բրիգադը: Նախատեսված 200-ի փոխարեն, նրա կոլեկտիվը պետությանը վաճառել է 440 տոննա բարձրորակ խաղող:

Գնացել էի Էջմիածին, իհարկե, որոշակի մտադրությամբ, բայց այնպես ստացվեց, որ տվեցի բոլորովին անպատրաստ հարց.

— Հովհաննես, դժվա՞ր է դեպուտատ լինելը:

— Կասեմ ազնվորեն. հեշտ չէ: Դեպուտատը դադար չունի և չի կարող ունենալ: Մեր աշխատանքը միշտ կա և բոլորի աչքի առաջ է: Պարտականությունները շատ ու բազմազան են: Սակայն, ինչպես և ուրիշ ցանկացած գործում, մեզ մոտ կան հիմնականը, առաջնայինը: Դա աշխատանքն է ընտրողների շըրջանում, կապը նրանց հետ: Ինձ համար արդեն վաղուց պարզել եմ, որ դժվար թե դեպուտատը կարողանա լուծել իր առջև ծառացած հարցերը, անել համապատասխան ճիշտ հետևություններ, մտցնել գործնական առաջարկություններ, եթե այդ բոլորը չի ստուգել այն բանով, ինչի մասին խոսում, մտածում են նրան սովետում ընտրողները: Ընտրողների հետ կանոնավոր հանդիպումները օգնում են ինձ՝ միշտ տեղյակ լինել, թե ինչով են ապրում նրանք, ինչն է նրանց հուզում:

Աշնանային կարճ օրը մեզ համար աննկատելիորեն վերածվեց երեկոյի: Մենք մտանք փայտյա կիսածածկի տակ, որը խաղողագործների համար ծառայում է որպես տուն երկար ամիսներ: Իմ ուղեկիցը վառեց լամպը և շարունակեց.

— Մեր երկրում շատ բան է արվում դեպուտատի հեղինակությունը բարձրացնելու համար: Բայց առաջին հերթին այդ մասին պետք է հոգա ինքը՝ ընտրյալը, իր ակտիվ գործունեությամբ արտադրության մեջ, ընտրական օկրուգում, վերջապես՝ սովետում: Համոզված եմ, ընտրողների հարգանքից զըրկվում է այն դեպուտատը, ով նիրհում է նախկինում ձեռք բերած դափնիների վրա, ում աշխատատեղում կարգապահությունը հարգի չէ կամ կենցաղում իրեն այնպես չի պահում, ինչպես հարկն է: Պարզ է, նրա մոտ մարդիկ չեն գնա:

Դեպուտատի համար ընտրողների վստահությունը կարևորներից կարևոր է: Միշտ հուզումով, իսկ վերջին ժամանակներս անհամբերությամբ եմ սպասում դեպուտատական ընդունելության օրվան: Չէ՞ որ հաճախ դեպուտատի մոտ գնում են ոչ թե ուրախությունը կիսելու,— թեև եղել են և այդպիսի դեպքեր,— գալիս են դժբախտության առիթով, չլուծված պրոբլեմներով, խնդրանքով, վերջապես՝ հույսով: Իսկ երբ գալիս են, նշանակում է՝ հավատում են քեզ: Եվ եթե կարողանում եմ օգնել որևէ մեկին՝ հաղթահարելու դժվարությունը, ես երջանիկ եմ:

Առաջին և բնական ցանկությունը, հասկանալի է, օգնելն է: Բայց միշտ ձգտում եմ իսկական ցավը տարբերել կեղծից: Ձգտում եմ բաց չթողնել այցելուին, եթե լիովին չեմ թափանցել գործի էության մեջ, չեմ պատկերացնում, ինչ կարելի է անել տվյալ կոնկրետ դեպքում:

Հաճախ դիմում եմ ժողովրդական դեպուտատի ստատուսի վերաբերյալ օրենքին: Օրենսդրությունը մեզ՝ դեպուտատներիս, վերապահում է մի շարք կազմակերպական-իրավական հնարավորություններ՝ բոլոր ասպարեզներում արդյունավետ աշխատանք ծավալելու համար: Գտնում եմ՝ դրանք պետք է օգտագործել լիովին, իսկ դրա համար, ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1984 թվականի ապրիլի 13-ի նիստում, հարկավոր է արմատախիլ անել ձևամոլությունը, ազատվել պասիվությունից: Հարկ է եղել զբաղվել ամեսովորական գործերով: Բայց, ա՛յ քեզ զարմանք, ստիպված ես ծախսել շատ ժամանակ, եռանդ, պաշտոնական անձանց շեմքեր մաշել: Դա իսկական չարիք է, որից պետք է ազատվել բոլոր միջոցներով: Այդ բացասական երևույթների դեմ, առաջին հերթին, պետք է պայքարենք մենք՝ ժողովրդի ընտրյալներս:

Ես ասացի, որ շատ բան է արվում դեպուտատի հեղինակությունը ապահովելու համար: Դեպուտատի գործունեության դերի բարձրացմանն ու կատարելագործմանը մեր կուսակցությունն ու կառավարությունը մշտական ուշադրություն են նվիրում: Դրա նոր վկայությունը «Ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի որոշումն է: Մեր՝ ժողովրդի լիազորված ներկայացուցիչներիս, դեպուտատ-կոմունիստներիս մասին ընկ. Կ. Ու. Չեռնենկոն այսպես ասաց. «Այստեղ կարևոր է նրանց օրինակը, կարևոր է նրանց պատասխանատու վերաբերմունքը դեպուտատական պարտականություններին»:

Կարծում եմ, կարտահայտեմ բոլոր դեպուտատների կարծիքը, եթե ասեմ, որ մեզ հարկավոր է լավ աշխատել յուրաքանչյուր օր, դեպուտատական գործունեության հիմքում դնել ընտրողների հոգսերը, կատարել պատվիրանը նրանց, ովքեր մեզ վստահել են դեպուտատի մանդատը:

— Հովհաննես, հիշո՞ւմ ես քո առաջին պատվիրանը:

Հովհաննեսը հիշեց այն հիշարժան օրը, երբ նրան հանձնեցին դեպուտատական մանդատը, հուզված գնաց վարպետի՝ տնտեսության հնագույն խաղողագործ Ուրմիկ Գասպարյանի մոտ: Ցանկանում էր մտքեր փոխանակել, խորհուրդ հարցնել: Նրան համակել էր տարակուսանքը՝ կարո՞ղ է արդյոք արդարացնել մարդկանց վստահությունը:

— Համոզված եմ, կարող ես, տղա՛ս: Իհարկե, դժվար կլինի: Իսկ խաղող աճեցնելը, ասա ինձ, հե՞շտ է: Քեզ իմ խորհուրդը՝ ապրիր այն մարդկանց հոգսերով, ովքեր վստահել են դեպուտատական մանդատը, պաշտպանիր նրանց շահերը:

Դա առաջին պատվիրանն էր, որ ստացավ դեպուտատ Հովհաննես Խաչատրյանը: Ինչպես և մյուս պատվիրանները, պատվով իրագործեց: Նրա ընտրողները միաձայն կարծիքի են. Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, «Պատվո նշան»-ի շքանշանակիր Հովհաննես Խաչատրյանը արդարացնում է իր բարձր կոչումը:

# ՍՈՎՈՐԵՆՔ ԼԵՆԻՆԻՑ

ԼԵՆԻՆԻ ԿՅԱՆՔԻՆ ու գործունեությանը,
նրա տեսական ժառանգությանը նվիրված ա-
մեն մի ուսումնասիրություն առավել մեծ հե-
տաքրքրություն է ներկայացնում հատկապես
սովետական հասարակության արդի փուլում,
երբ ավելի ու ավելի կարևորվում է գաղափա-
րախոսական աշխատանքի դերը մեր հոգևոր
կյանքում: Այս առնչությամբ ուշագրավ է Վ. Ս.
Օհանյանի **Գեղարվեստական, պատկերավոր
խոսքը Վ. Ի. Լենինի երկերում** մենագրությու-
նը, որը, անշուշտ, հույժ կարևոր է պրոպա-
գանդիստների, դասախոսների, ուսուցիչների
համար*: Բարեխիղճ, գիտական մանրակրկիտ
աշխատանքի արգասիք է այն, ուր ամփոփ-
ված, վերլուծված և ընդհանրացված են մեծ
առաջնորդի օգտագործած հարուստ գրակա-
նությունից, ժողովրդական բառ ու բանից
քաղված արտահայտությունները, թևավոր
խոսքերը, ասույթներն ու ասացվածքները:
Ծանոթանալով Վ. Օհանյանի այս աշխատու-
թյանը՝ ընթերցողը մի անգամ ևս համոզվում
է, թե Իլյիչը որքա՛ն էր սիրում ու գնահա-
տում ժողովրդական բանահյուսությունը, որ-
քա՛ն խորագիտակ էր ռուսական ու անտիկ,
արտասահմանյան գրականության գոհարներին:
Հեղինակի նպատակն է եղել նաև վերստին
ցույց տալ, որ անգերազանց հրապարակա-
խոսը խոսքի մեծագույն վարպետ էր:

Գրական-գեղարվեստական ստեղծագործու-
թյուններից արված քաղվածքների, գրական
կերպարների, ժողովրդական առածների ու ա-
սացվածքների, դարձվածքների, թևավոր խոս-
քերի, պատկերավոր այլ արտահայտություն-
ների օրինակները գրքում դասավորված են
խմբերով՝ ըստ աղբյուրների, հնարավորին
չափ պահպանելով ժամանակագրական կար-
գը:

**Ժողովրդական բանահյուսությունից քաղված
առածներ, ասացվածքներ, դարձվածքներ**
բաժնում բերված օրինակները ևս վկայում են,
թե որքան խորագիտակ էր առաջնորդը ժո-
ղովրդի կյանքին ու կենցաղին, նրան հուզող

հարցերին ու պրոբլեմներին: Այդ դարձվածք-
ները լենինյան շարադրանքում նոր հնչեղու-
թյուն ու երանգ են ձեռք բերել: Ահա դրանցից
մի քանիսը. «Յոթ անգամ չափիր, մեկ ան-
գամ կտրիր», «Ում շատ է տրված, նրանից
շատ էլ պահանջվում է», «Չի սխալվում նա,
ով ոչինչ չի անում», «Մի հիմար կարող է
շատ ավելի շատ հարցնել, քան տասը խելոք
պատասխանել», «Սխալվել կարող է ամեն
մարդ, բայց սխալը պնդել՝ միայն տխմարը»,
«Լողալ սովորելու համար պետք է ջուրը
մտնել», «Գող՝ սիրտը դող», «Խեղդվողը ձեռ-
քը ծղոտին է մեկնում»: Նա հմտորեն օգտա-
գործել է նաև պարզ դարձվածքներ, ինչպես՝
խոսքը քամուն տալ, քթից բռնածման ածել,
աչքին թոզ փչել և այլն: Հանրահայտ է, որ
գիմնազիայում Իլյիչը բարձր գնահատականներ
էր ստանում բոլոր առարկաներից, բացի կրո-
նից. սակայն նա լավ գիտեր և՛ Աստվածա-
շունչը, և՛ Ավետարանը. այդ են վկայում
դրանցից ժողովրդի խոսակցական լեզվին ան-
ցած դարձվածքների օգտագործումը. այսպես՝
«քավության նոխազ», «ունայնություն ունայ-
նությանց», «ձայն բարբառո հանապատի»:

Վ. Ի. Լենինի գրադարանավարուհին՝ Շու-
շանիկ Մանուչարյանցը, գրել է. «Նա կատա-
րելապես տիրապետում էր գերմաներենին,
ֆրանսերենին և անգլերենին, փոքր-ինչ վատ
գիտեր իտալերեն, հոյակապ գիտեր լատինե-
րեն և հունարեն...»: Դեռ դպրոցական հասա-
կում նա ազատ կարդում և թարգմանում էր Հո-
մերոսին, Հերոդոտին,Սոփոկլեսին, Պլատոնին
և այլոց: Այդ տարիներից իսկ նրա հոգում խոր
արմատներ նետած հունահռոմեական անտիկ
գրականության կերպարներն ու թևավոր ար-
տահայտությունները լայնորեն օգտագործել է
նա իր թե՛ գրավոր և թե բանավոր խոսքում:
Վ. Օհանյանը խիստ ամփոփ ձևով ներկա-
յացրել է դրանք **Առասպելական և դիցաբա-
նական կերպարներ, պատկերավոր արտահայ-
տություններ** բաժնում: Լենինը «Դրակոնյան
օրենքներ» է համարել ցարական արդարադա-
տությունը, «Հերոստրատյան հռչակ»՝ Պլեխա-
նովի կարծիքը 1905 թ. դեկտեմբերյան զին-
ված ապստամբության մասին. անհավատալի

---

* *Վ. Ս. Օհանյան, Գեղարվեստական պատկե-
րավոր խոսքը Վ. Ի. Լենինի երկերում, «Հայաս-
տան» հրատ., 1984 թ.:*



չարչարանք, ապարդյուն տքնություն ցույց
տալու համար օգտագործել է «Սիզիֆյան աշ-
խատանք» արտահայտությունը:

Այս բաժինը հետաքրքրական է հատկապես
նրանով, որ հեղինակը, նշելով թե ո՛ր աշխա-
տությունում, ի՛նչ նպատակով, ի՛նչ առիթով է
Լենինն օգտագործել այս կամ այն թևավոր
խոսքը, առավելագույն համառոտակիությամբ
վերաշարադրել է տվյալ դիցաբանական ա-
վանդավեպը, առասպելը:

Գրքի ամենաընդարձակ բաժինը վերնագր-
ված է **Պատկերավոր արտահայտություններ և
մեջբերումներ ռուսական գեղարվեստական
գրականությունից:** Վլադիմիր Իլյիչը բարձր է
գնահատել Ի. Ա. Կռիլովի խորիմաստ առակ-
ները, բազմիցս օգտագործել դրանց իմաստա-
լից ասույթներն ու փոխաբերական դարձվածք-
ները:

Այսպես, **II ինտերնացիոնալի կրախը** հոդվա-
ծում, ցույց տալով թե ինչպե՛ս ձեռքը ձեռք է
լվանում կանոնի հիման վրա ամեն երանգի
օպորտունիստները պաշտպանում են իրար,
Կռիլովի առակից բերում է «Կկուն գովում է
աքլորին, որովհետև աքլորն էլ գովում է կըկ-
վին» արտահայտությունը: Եվ այսպես, պա-
տեհ առիթներով նա օգտագործում է շատ այլ
առակներ՝ խոսքը դիպուկ, մատչելի ու տպա-
վորիչ դարձնելու նպատակով:

Ա. Ս. Գրիբոյեդովն իր հռչակավոր **Խելքից
պատուհասում** կերտել է այնպիսի կերպար-
ներ, ստեղծել այնպիսի դիպուկ արտահայտու-
թյուններ, որոնք մասսայականացել, լայնորեն
տարածվել են, դարձել ժողովրդի սեփականու-
թյունը: Այդ ամենը բազմիցս օգտագործել է
Լենինը իր ստեղծագործություններում: Նա
հաճախ է դիմել և իր սիրած պոետներին՝
Պուշկինին, Լերմոնտովին:

Ջաղկելով գաղափարական հակառակորդ-
ներին՝ Լենինը դիմել է ռուս մեծ երգիծաբան
Գոգոլի ստեղծագործությունների հերոսներին:
Հիրավի, մեծ ռեալիստի քննադատական շուն-
չը խոր արձագանք է գտել Լենինի ստեղծա-
գործություններում: **Թե որ լսես տխմարի դա-
տավճիռը** բրոշյուրում, **Ամոթանք և ափսոսանք**
հոդվածում Լենինը գոգոլյան հայտնի Իվան
Իվանովիչի և Իվան Նիկիֆորովիչի վարքա-
գծին է նմանեցնում մենշևիկների և մարքսիզ-
մի գաղափարական հակառակորդների բան-
սարկությունները:

Լենինի ստեղծագործություններում առանձ-
նահատուկ տեղ են գրավել **Ռեխզոր** կատա-
կերգության կերպարները, թևավոր խոսք դար-
ձած արտահայտությունները: **Մերկացնելով**
մենշևիկներին, ռեխզոնիստներին ու օպոր-
տունիստներին՝ **«խլեստակովյան»** է կոչել մեն-
շևիկյան նոր **«Իսկրան»**:

Անդրադառնալով Մանիլովին և մանիլովա-
կանությանը ռուսական իրականության մեջ՝
նա դատապարտում է նարոդնիկների անհիմն
երազանքների, լիբերալ բուրժուազիայի հետ
պրոլետարիատի միավորման մենշևիկյան քա-
րոզների մանիլովականությունը: Անպատկառ,
հանդուգն ու խաբեբա Նոզդրևի հետ է համե-
մատում էսէռ, մենշևիկ լրագրողներին:

Ռուս մեծ դրամատուրգ Ա. Ն. Օստրովսկու
շատ պիեսների խորագրեր՝ **Եկամտաբեր պաշ-
տոն, Անմեղ մեղավորներ, Ուրիշի խնջույքում
խումարախում,** հաճախակի օգտագործվել են
Իլյիչի ստեղծագործություններում:

«Ռուսաստանը երեք հեղափոխություն է
կատարել,— ասել է Վ. Ի. Լենինը **Սովետա-
կան հանրապետության միջազգային և ներքին
դրության մասին**՝ 1922 թ. արտասանած ճա-
ռում,— և, այնուամենայնիվ, Օբլոմովները մը-
նացել են, որովհետև Օբլոմով էր ո՛չ միայն
կալվածատերը, այլև գյուղացին, ո՛չ միայն
գյուղացին, այլև ինտելիգենտը, և ո՛չ միայն
ինտելիգենտը, այլև բանվորն ու կոմունիստը:
Բավական է տեսնել, թե մենք ինչպե՛ս ենք
նիստեր անում, ինչպե՛ս ենք աշխատում
հանձնաժողովներում, ասելու համար, որ հին
Օբլոմովը մնացել է, և պետք է նրան երկար
ժամանակ լվանալ, մաքրել, թափ տալ և քըր-
քըրել, որպեսզի որևէ բան դուրս գա» (**ԵԼԺ**,
հ. 45, էջ 17): Ի. Ա. Գոնչարովի **Օբլոմով**
վեպի հերոսի՝ ծույլ, ալարկոտ ու անբան Օբ-
լոմովի մասին է խոսքը: Նորաստեղծ պետու-
թյան առաջնորդը, որ այնպես հաճախ զգու-
շացնում էր օբլոմովականությունից, այդ երե-
վույթը համարում էր բուրժուակալվածատի-
րական մակաբույծ, աշխարհի հոգեբանության
մնացուկ:

Իր գաղափարները, ասելիքը առավել մատ-
չելի դարձնելու նպատակով նա դիմել է տուր-
գենյան կերպարներին: Տարբեր առիթներով
Իլյիչը կրկնում էր Բազարովի խոսքերը՝ «Օ՜,
բարեկա՛մս... այդպես գեղեցիկ մի՛ խոսիր»:

Այստեղ հիշատակված են Ն. Կ. Կրուպսկա-
յայի խոսքերը, թե ինչպիսի ազդեցություն է
գործել Իլյիչի վրա ռուս մեծ հեղափոխական
դեմոկրատ Ն. Գ. Չերնիշևսկին, որի հերոսնե-
րին աշխատել են նմանվել հեղափոխականնե-
րի մի քանի սերունդներ: Իր անհաշտելիու-
թյամբ, ինքնատիպությամբ, հպարտ արժանա-
պատվությամբ Չերնիշևսկին միշտ հոգեհարա-
զատ է եղել Վլադիմիր Իլյիչին:

Նեկրասովի բանաստեղծական աշխարհը,
որը հագեցած էր քաղաքացիական պաթոսով,
մշտապես հուզել է Իլյիչին: Նա սիրում էր
մեջբերել նեկրասովյան հայտնի տողերը.

*Դու և՛ աղքատ ես, դու և՛ լիառատ ես,*
*Դու և՛ հզոր ես, դու և՛ անզոր ես,*
*— Մայր-Ռուսիա։*

Լենինի գաղափարական զինանոցում իրենց ուրույն տեղն ունեն Սալտիկով-Շչեդրինի ստեղծագործությունները, որոնք հրազենի պես խոցել են ցարական Ռուսաստանի սոցիալական արատները։ Շչեդրինի բողոքի ձայնը, անողոք երգիծանքը արթնացնում էին մասսաներին, զինում նրանց՝ պայքարելու սոցիալական ճնշման դեմ, սովորեցնում ճանաչել թշնամուն, մերկացնում ու ծաղրում պորտաբույծներին, խարդախներին, կեղծավորներին, գիշատիչներին, դավաճաններին, վախկոտներին, դատարկամիտ երազողներին... Այսպես, **Լակեյանոցում** հոդվածում, բնութագրելով մենշևիկ Յուշկևիչին, Լենինը նրան կոչում է նորագույն կապիտալիստական ֆորմացիայի Իուդուշկա Գոլովլյով, իսկ մեկ այլ հոդվածում Տրոցկուն անվանում է Հուդա։

Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման և իրականացման շրջանում, քաղաքացիական կռիվների լարված տարիներին Լենինը ժամանակ էր գտնում հետևելու նոր ծնվող սովետական գրականությանը։ Նա հատուկ հոդված գրեց Ա. Ի. Թոդորսկու **Մի տարի հրացանով և գութանով** ակնարկների ժողովածուի մասին, ուշադրությամբ հետևում էր Վ. Կնյազևի, Ի. Էրենբուրգի ստեղծագործություններին։ Նրան անսահման ոգևորում էր Մ. Գորկու գրական ամեն մի քայլը։ Հանրահայտ է Լենինի ու պրոլետարական մեծ գրողի բարեկամությունը, որը հիմնված է եղել գաղափարական միաբանության վրա։ Նա հիացած էր **Մրրկահավի երգը** արձակ բանաստեղծությամբ։ «Բոլոր նշանները ցույց են տալիս,— գրում է Իլյիչը 1906 թ. գրած **Փոթորկից առաջ** հոդվածում,— որ մենք կանգնած ենք մեծ պայքարի նախօրյակին... Բավական է երկչոտ կադետների, այդ «տխմար պինգվինների» հեգեմոնիան, որոնք «երկչոտությամբ իրենց ճարպոտ մարմինը թաքցնում են ժայռերի մեջ»։

«Թող ավելի՛ ուժգին պայթի փոթորիկը...» (**ԵԼԺ**, հ. 13, էջ 411)։

Լենինի տեսադաշտից չէին վրիպում գրական նոր անունները, որոնց արվեստը մեծապես նպաստում էր նոր կյանքի զարգացմանը։ Այս առիթով ուշագրավ են Դեմյան Բեդնուն վերաբերող խոսքերը. «Ինչ վերաբերում է Դեմյան Բեդնուն, շարունակում եմ կողմ մնալ... Տաղանդը հազվագյուտ բան է։ Հարկավոր է նրան սիստեմատիկորեն և զգուշությամբ աջակցել»։

Հանրահայտ են Իլյիչի խոսքերը Վլ. Մայակովսկու՝ «Իզվեստիայում» հրապարակված **Ժողովամոլները** բանաստեղծության մասին, ասված մետաղագործների համառուսաստանյան համագումարի կոմֆրակցիայի նիստում (1922 թ.) «...վաղուց է ես այդպիսի հաճույք չեմ զգացել քաղաքական ու վարչական տեսակետից։ ...Մենք, հիրավի, գտնվում ենք այնպիսի մարդկանց դրության մեջ... որոնք շարունակ նիստեր են ունենում, հանձնաժողովներ են կազմում, պլաններ են կազմում անվերջ... Դեկրետների գործնական կատարումը ստուգման չի ենթարկվում, դեկրետներ, որ ավելի ունենք, քան պետք է, և որոնք թըխում ենք այն շտապողականությամբ, որ նըկարագրել է Մայակովսկին» (**ԵԼԺ**, հ. 46, էջ 16—18)։

Կոմինտերնի II կոնգրեսի նիստն էր 1920 թվականին, Կրեմլի պալատի Անդրեևյան դահլիճում. «Քանի դեռ խոսքը վերաբերում էր Գերմանիայի կոմունիստական կուսակցությանը,— հիշում է Ե. Դ. Ստասովան,— Վլադիմիր Իլյիչը խոսում էր գերմաներեն, իսկ երբ սկսեց խոսել Սերատիի սխալների մասին, իսկույն անցավ ֆրանսերենին... օտարերկրացիները չէին կարողանում պատկերացնել, որ ռուսը, որ հենց նոր այնքան փայլուն խոսում էր գերմաներեն, նույնպես ազատ տիրապետում էր ֆրանսերենին»։ Մի քանի օտար լեզուներով նա կարդում էր քաղաքական ու գեղարվեստական գրականություն։ Եվ Օհանյանը մեջբերում է Ծ. Մանուչարյանցի խոսքերը. «Արիստոտելից մինչև Ուելսը, Հոֆմանից մինչև Նեքսեն— այսպիսին էր օտարերկրյա գեղարվեստական գրականության բնագավառում Վլադիմիր Իլյիչի ընթերցասիրական հետաքըրքրությունների դիապազոնը»։ Ապա օրինակներով ցույց են տրվում նրա մեջբերումները Կուպերից, Շեքսպիրից, Դեֆոյից, Շիլլերից, Գյոթեից, Սերվանտեսից, Դանթեից, Մոլիերից, Լաֆոնտենից, Դոդեից, Զոլայից, Բարբյուսից...

Իր ողջ բազմակողմանի գործունեության ընթացքում միշտ Մարքսի, Էնգելսի հետ խորհրդակցող առաջնորդը հաճախ է դիմել նրանց ասույթներին, պատկերավոր արտահայտություններին։ Հին աշխարհի վերափոխման համար նախապատրաստվող աննահանջ գոտեմարտերում նա բազմիցս հիշատակում էր մարքսյան «Ապստամբությունն արվեստ է» բանաձևումը։

«...Կրոնը ափիոն է ժողովրդի համար,— Մարքսի այս ասույթը մարքսիզմի ամբողջ աշխարհայեցողության անկյունաքարն է կրոնի հարցում»— կարդում ենք Լենինի **Կրոնի նկատմամբ բանվորական կուսակցության վերաբերմունքի մասին** հոդվածում, իսկ **Սոցիալիզմը և կրոնը** հոդվածում՝ «Կրոնը ժողովրդի հաշիշն է, կրոնը հոգևոր օղու մի տեսակն է», գրում է Լենինը։

**Լենինյան** թևավոր արտահայտություններ մասում Վ. Օհանյանը շեշտել է, որ ինքը՝ Լենինը, ստեղծել է բազմաթիվ այդպիսի արտահայտություններ։ Նրա խորախոր մտքերը, դիպուկ դարձվածքները լայնորեն տարածվել, մասսայականացել են, գործածվում են քաղաքական գրականության, ժողովրդական խոսքի մեջ։ Այսպես՝ «Լրագիրը ո՛չ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ և կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ», «Առանց հեղափոխական տեսության չի կարող լինել և հեղափոխական շարժում», «Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը»։ Շատ գործածական թևավոր խոսք է դարձել **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** աշխատության վերնագիրը։ Ինչպես իրավամբ նշել է հեղինակը, այդպես լինում է և՛ անհատների կյանքում, և՛ ազգերի պատմության, և՛ կուսակցությունների զարգացման մեջ։ «Մենք սիրում ենք մեր լեզուն ու մեր հայրենիքը» 1914 թվականին գրած **Վելիկոռուսների ազգային հպարտության մասին** հոդվածում սևեռված այս թևավոր խորիմաստ խոսքով աշխատավոր զանգվածների մեծ առաջնորդը, ազգերի բարեկամության ջատագովն ու ինքնության անխոնջ պաշտպանը այդ իրավունքն է արտոնել բոլոր ազգերին։

Հույժ այժմեական, երբեք չհնացող են Իլյիչի ուղենիշ խոսքերը 1920 թվականի դեկտեմբերին, սովետների VIII համագումարի պատգամավորների առաջ արտասանած ճառում. «Քաղաքական ղեկավարը պատասխանատու է ո՛չ միայն այն բանի համար, թե ինչպես է ղեկավարում, այլև այն բանի համար, թե ինչ են անում նրանք, որոնց ղեկավարում է նա» (**ԵԼԺ**, հ. 42, էջ 270)։

Շատ իմաստալի խոսքեր ու ասույթներ Լենինն օգտագործել է որպես բնաբան, վերնագիր, լոզունգ։ Այսպես՝ Կռիլովի **Կկուն ու աքլորը** առակից՝ **Կկուն գովում է աքլորին** արտահայտությունը դառնում է հոդվածի վերնագիր, որտեղ ցույց է տալիս, որ կադետները նովոյեմյականներին են գովում, նովոյեմյականները՝ կադետներին։ Էսէռներին մերկացնող հոդվածը վերնագրում է Գրիբոյեդովի **Խելքից պատուհասից** առնված **Իսկ դատավորնե՞րն ովքեր են**, մենշևիկներին և էսէռներին մերկացնող հոդվածը Գոգոլի **Ռևիզորից** վերցված **Ո՞ւմ վրա եք ծիծաղում, ձեզ վրա եք ծիծաղում** արտահայտություններով։ Որպես վերնագիր նա օգտագործել է նաև **Կաճապարես, մարդկանց վրադ կծիծաղեցնես, Սոխակին հեքիաթներով չեն կերակրում, Ծառերի ետևում չեն տեսնում անտառը** և այլ առածներ։

Հետաքրքրական է գրքի **Ինչպես ենք պատկերավոր արտահայտությունները թարգմանում հայերեն** բաժինը, որտեղ հեղինակը նշում է, որ Լենինի երկերի հինգերորդ հրատարակությամբ լույս տեսած հատորներում ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի թարգմանական սեկտորի աշխատակիցները զգալիորեն բարելավել են առակների, ասացվածքների, թևավոր խոսքերի թարգմանությունը, շտկել չորրորդ հրատարակության սխալները։ Այդ արվել է բառացի թարգմանության սկըզբունքը հաղթահարելու շնորհիվ։ «Չպետք է մոռանալ, որ կան ռուսերենին հատուկ դարձվածքներ,— գրում է հեղինակը,— որոնց բառացի թարգմանություններն անհանդուրժելի են, դրանք պետք է փոխարինվեն հայերենում ընդունված դարձվածքներով»։

Ապա հեղինակը բերել է օրինակների չորս ցուցակ, ներկայացրել թարգմանության չորս տարբեր մոտեցում, որն օգտակար կարող է լինել թե՛ գեղարվեստական և թե քաղաքական գրականությունը թարգմանողներին։ Նըման ցուցակներ ներկայացնելով՝ հեղինակը, սակայն, վերապահում է կատարում, ասելով, որ այդ դասակարգումը քարացած չէ։ Ամենևին նպատակ չունենալով քննարկել Լենինի երկերի հայերեն թարգմանության թերությունները ու սխալները՝ Օհանյանն իրավամբ նըշում է, որ «Թարգմանիչը կաշկանդված չպետք է լինի ոչ մի ցուցակով և թարգմանվող տեքստի իմաստային երանգներից ելնելով թարգմանությունը պետք է կատարի՝ ձգտելով թարգմանվող տեքստի իմաստային նրբությունները պահպանել, այսինքն՝ հեղինակի միտքը հայերեն ճիշտ շարադրելու համար պետք է ցուցաբերի ստեղծագործական մոտեցում» (էջ 180)։

Նշելով, որ Լենինի ստեղծագործությունների առաջին թարգմանիչները, ինչպես և այս հրատարակության թարգմանիչները, դրվատելի համառ ու տքնաջան աշխատանքով փնտրել, գտել, ստեղծել և հայ ընթերցողի սեփականությունն են դարձրել բազմաթիվ պատկերավոր արտահայտությունների և բառակապակցությունների հայերեն համարժեք ձևերը, միաժամանակ նշում է, որ կան նաև անհաջող ու սխալ թարգմանություններ, որոնցից անդրադառնում է միայն երկու տիպի թերություններին՝ նշելով և դրանց պատճառները։

Այստեղ, սակայն, ցանկանում ենք նշել գըրքում նկատվող մի թերության մասին. Լենինի ստեղծագործությունների, հոդվածների որոշ

վերնագրեր չեն համապատասխանում **Երկերի լիակատար ժողովածուում** եղած վերնագրերին:

**Ագիտատորներ ու պրոպագանդիստներ, սովորեցեք օգտագործել պատկերավոր խոսքը.** այսպես է վերնագրել գրքի վերջին բաժինը հեղինակը: Որպես պրոպագանդիստ Լենինի ամենաբնորոշ հատկանիշը, ինչպես գրել է Ն. Կ. Կրուպսկայան, նրա խոր համոզվածությունն էր, առարկայի խոր իմացումը: Ինչպես որ Իլյիչը շատ հաճախ կարիք էր ունենում խորհրդակցելու Մարքսի, Էնգելսի հետ և դիմում էր նրանց, այնպես էլ այսօրվա մեր պրոպագանդիստներն ու ագիտատորները, գաղափարական ճակատի բոլոր աշխատողները մշտապես պետք է խորհրդակցեն Լենինի հետ, սովորեն նրանից: Տեղին է հեղինակը բերել Կլարա Ցետկինի խոսքերը. «Նրա զեկուցումը համոզելու նրա արվեստի վարպետության նմուշն է. ճարտարախոսային պաճուճանքների ոչ մի ամենափոքր նշույլ: Նա ներգործում է միայն իր պայծառ մտքի, փաստարկման անողոք տրամաբանության և հեղափոխականորեն տոկուն գծի ուժով: Լենինը չի ուզում շլացնել, գրավել. նա ցանկանում է միայն համոզել: Նա համոզում է և դրանով գրավում»:

Մեծ առաջնորդի, անգերազանց հրապարակախոսի հարուստ փորձն անսպառ գանձարան է: Գաղափարական աշխատանքով զբաղվող ամեն մի գործչի պարտքն է, եզրափակում է հեղինակն իր գիրքը, ««Խորապես ուսումնասիրել Վ. Ի. Լենինի աշխատությունները. հասկանալ ու յուրացնել մարքսիզմ-լենինիզմի տեսությունը, ինչպես նաև ուսումնասիրել լենինյան երկերի լեզուն ու ոճը, ընդօրինակել լեզվական կուլտուրան կատարելագործելու լենինյան վարպետությունը»:

Գրախոսվող աշխատությունը լուրջ ներդրում է սովետահայ լենինապատումի ասպարեզում:

Էմմա ՍԱՐՈՅԱՆ



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, կուսակցական կյանք բաժին՝ 52—05—58, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—66—77: գրական աշխատողներ՝ 52—99—36, խմբագրության վարիչ՝ 52—99—34,

*Հանձնված է շարվածքի 19.12.84 թ.: Ստորագրված է տպագրության 22.1.85 թ.: ՎՖ 05127: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 17.382: Պատվեր՝ 2496:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.